# ԴԵՊԻ ՃԱՄԲԱՐ

ՆԵՐՍԻԿ ԱՌԱՔԵԼՅԱՆ

Թռչում է ավտոն ու տանում է մեզ.
Հեռու չէ արդեն, մոտ է ճամբարը.
Արևն է ժպտում, ամառ է հրկեզ,
Որքա՛ն դյութիչ է այս ճանապարհը:

Տե՛ս, Զանգուն մեր խենթ, որպես կապույտ ձի
Կտրած իր սանձը, փրփուրը բերնին,
Փախչում է արագ ծորով գեղեցիկ,
Դեպի հեռուներ՝ դաշտերը բերրի:

Նայի՛ր, այս ծառին՝ կաղնուն այս չքնաղ,
Որ շուք է արել մեր ճանապարհին,
Թվում է հիմա կկանչի ուրախ՝
Կարոտել եմ քեզ, արի՛, շու՛տ արի:

Ավտոն սլանում, թռչում է առաջ...
Ահա և գյուղը՝ Ծաղկաձորը մեր.
Ողջույնի պատրաստ անտառը կանաչ
Հարազատ մոր պես իր գիրկն է բացել:

Եվ շուտով, շուտով կիջնի երեկոն,
Գյուղի երեկոն, կապույտ ու խորունկ,
Քնքույշ ժպտացող՝ աստղերի ներքո
Բոցեր կարծակի մի հսկա խարույկ:

Նկ. Լ. ԽԱՆԱՄԻՐՅԱՆ

№ 6 1959 թ.
ՀՈՒՆԻՍ



ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
31-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԱՏԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

*ՄԵՍԱՔՅԱՆ*

# ՈՍՏԻԿԱՆԻ փռշտոցը



Բեռնաթափում են «Լիպեցկ» նավը մեր՝
Շոգ Եգիպտոսի հեռու ափերին,
Հսկում է քնատ ոստիկանը դեռ·
Դեղին պատնեշը լեցուն պարկերի:
Մի արաբ աղջիկ առավոտը վաղ
Պարկերի շուքում կուչ եկած թաքուն,
Մանուկ սրտի մեջ խոր տագնապ ու վախ,
Թափած ցորենն է գետնից հավաքում:
Արևն է խաշել ձեռքեր ու երես,
Ցեխը՝ կնճիռներ թողել ոտքերին,
Հյուսքերն են ձգվել սանդուղքների պես,
Ծանրացել նրա վտիտ ուսերին...
Նա մերթ փչում է ցորենը հողոտ,
Մերթ հատիկ-հատիկ փեշը լցնում խեղճ,
Կարծես որբացած մանկությունն է խորթ
Արցունքների պես թափվում գոգի մեջ:
Երևի տանը մայր ունի հիվանդ,
Փոքրիկ քույր ունի, եղբայր դեռահաս,
Որ սպասում են հույսով անվհատ,
Աչքերում վառած մի-մի կուշտ երազ...
Բայց լի պարկերի անդորրում դատարկ,
Մի քայլի վրա. տիրող նման լուրջ,
Կայծակեց հանկարծ մոտ քթի տակ
Մեր ոստիկանի փռշտոցը փուչ:
Աղջիկը տեղից ցատկեց սարսափած,
Շաղ եկավ փեշի ցորենը ոսկի,
Քամու պես թռավ, փախավ ձեռնարաց
Մույլ հայացքի տակ գեր ոստիկանի:

*Նկ. Ա. ԳԱԼԵՆՑԻ*

# ՓՈՔՐԻԿ ՄԱՏՈՒՑՈՂԸ



Ալեքսանդրիայի ծովափին կիզիչ,
Սեղանների շուրջ մինչև ուշ գիշեր,
Դեռ պտտվում է ուսին մի սրբիչ,
Մատուցող արաբ տղան գանգրահեր:

Բոյը սեղանին հազիվ է հասնում,
Բայց գիտե ժպտալ տեղի-անտեղի,
Որ հաճախորդին գրավի իսկույն,
Սրտերում հույզի մի կրակ թեղի:

Վզին նայելիս մարդու խիղճ կգա,
Բայց մրգով լեցուն սինին գեղեցիկ
Գլխին միշտ դրած՝ շրջում է վստահ,
Սեղմ հրամցնում, վաճառում ճարպիկ:

Երբ նստածները գովում են գիտակ
Տղայի ուժը, եռանդն անհատնում,
Նա լուռ պահում է թուխ ճակատի տակ
Արյունով լցված աչքերը տրտում...

Ու միայն գիտե տատիկը բարի,
Որ իր թոռնիկը բարձի մեջ հիմա
Դրամ է կիտում, որ եկող տարի
Դպրոց հաճախի, ուսում ստանա:

# ԱՐԱԲԱԿԱՆ ՇՈՒԿԱՅՈՒՄ

Շրջում էինք շոգ շուկայում արաբական,
Մայթի վրա կախ էր տված կարմիր մի ֆես,
Նրա կողքին՝ շապիկ, կոստյում, նուռ ու բանան,
Ոչխարի միս, կոշիկ, բաժակ... ինչ որ ուզես:

Ընտրում էինք մենք անանաս ու սև, չոր թութ,
Տեսանք՝ փոքրիկ մի թուխ տղա ձեռքը մեկնեց,
Վաճառողի աչքի առաջ, վարժ ու հմուտ,
Տարավ ծածուկ նշան դրած բանանը մեծ:

Մոտեցավ մեր կապիտանը երեխասեր
Ու տղայի ձեռքից բռնեց, հոր պես ժպտաց.
Երբ իմացավ լոկ մայր ունի ու տատիկ ծեր,
Ինչ-որ հեռու մի կարոտով տխրեց հանկարծ:

Գնեց բանան, խուրմա, կեռաս, հացեր համով,
Տվեց նրան ու հեռացավ՝ սրտում մի վերք.
«Хорошо, Սը՛ր» իր իմացած միակ բառով՝
Շնորհակալ եղավ տղան շուկայում մեկ:

*28/8—58 թ.*
*Ալեքսանդրիա*



Նկ. Կ. ՍՄԲԱՏՅԱՆԻ



# Փշրված երազներ

ՄԻՆԱՍ ՏԽՐՈՒՆԻ



Բեյրութի խուլ անկյուններից մեկում ապրում էր փոքրիկ Ալին իր մոր՝ լվացարար Աշնայի հետ։ Հայրը՝ Սելիմը զոհվել էր 1916 թվականին, պատերազմի հեռավոր դաշտերում։ Խոնավ ու մութ նկուղի պատից կախված էր հոր խունացած նկարը, որի առաջ Ալին հաճախ էր տեսել մորը՝ ծնկաչոք ու լալահառաչ աղոթելիս։

Ալիի տասը տարին դեռևս չէր լրացել, երբ նրա մանուկ գլխում ծագեց մորը նյութապես օգնելու միտքը։

Բայց ինչպե՞ս, ինչպե՞ս...

Ալին երկար-երկար մտածեց, մտածեց ու ելք չգտավ։ Բայց ելքն ինքն իրեն ներկայացավ։ Մի օր իրենց փողոցի խանութպան Օմարը նրան կանչեց ու ասաց.

— Ալի՛, կուզե՞ս փող աշխատել...

Ալին տարակուսած նայեց Օմարին։ Չի՞ ծաղրում արդյոք խանութպանը։

— Ա՛յ տղա, փողոցի ընկերներդ իմ ողորմածությամբ փող են աշխատում։ Ամեն առավոտ նրանց զանազան մանր-մունր բաներ եմ տալիս զեղչված գներով։ Ծախում են և օգտվում։ Ես քեզ էլ կտամ գրոշանոց շոկոլադներ, կոշիկի ու կիսակոշիկի կապեր, որ տանես ու վաճառես։ Չէ՞ որ դու մեծ ես արդեն, տասը տարեկան, մեղք է Աշնան, օգնի՛ր նրան...

Փոքրիկ Ալիի աչքերը ուրախությունից փայլատակեցին։ Նա հափշտակությամբ համբուրեց խանութպանի ձեռքը։ Իսկ Օմարը մի փոքրիկ կողովի մեջ լցրեց մանր-մունր բաներ՝ մի քանի հատ գրոշանոց շոկոլադ, կոշիկի զանազան կապեր և տվեց Ալիին։

— Ալի՛, 100 ղուրուշի ապրանք ունես։ Միտքդ լավ պահիր։ Երեկոյան 100-ի վրա կավելացնես և 25 ղուրուշ, որ բերես, հանձնես ինձ, այսինքն՝ 125 ղուրուշ, մնացած օգուտը քեզ։ Սա մեծ վստահություն է իմ կողմից, խաբելու դեպքում՝ այլևս ոչինչ չես ստանա։

Այդ պահից փոքրիկ արաբ տղայի համար սկսվեց տանջանքներով ու ուրախություններով լի նոր մի կյանք։ Նա բոկոտն վազվզում էր ողջ Բեյրութով մեկ և մանկական զիլ ու զրնգուն ձայնով կանչում.

— Շոկոլադ ալա հալի՛բ,
շիրիթ բո՛տ, շիրիթ սըքքա՛տ...*

* Կաթնաշոկոլա՜դ, կոշիկի կա՜պ, կիսակոշիկի կա՜պ...

Որդու անդրանիկ վաստակը չտեսնված ցնծություն պատճառեց մորը։ Ալին այդ օրը շահել էր հինգ ղուրուշ։ Դա նրա առաջին վաստակն էր։ Նա այդ դրամով գնել էր Շամի կոչված պաղպաղակ և տարել մորը։

Մայրը որդու առաջին վաստակի ուրախությանը մասնակից դարձրեց հարևաններին։

— Սամա՛ր, Ֆաթիմա՛, քույրե՛ր, եկեք Ալիիս առաջին վաստակը վայելենք։ Փա՜ռք ալլահին, որ երազս իրականացավ...

Հարևանները ուրախությամբ մասնակցեցին այդու համեստ հյուրասիրությանը, շոյեցին Ալիի սև ու գանգուր մազերը և օրհնեցին։

Այդ օրվանից Ալիին թվում էր, որ ինքը մոր միակ հովանավորն է դարձել։

* * *

Օրերն օրերի հետևից թռան-անցան։ Ալիի բոբիկ

ոտքերը հաճախ էին արյունոտվում քար ու մեխից, բայց նա ուրախ էր, որ վերջապես օգնում էր մորը, թեթևացնում նրա ծանր բեռը։ Նա երազում էր մոր համար շորացու գնել և նրան ազատել ուրիշի դռանը աշխատելու ստրկացուցիչ աշխատանքից։

Երազում էր Ալին, իսկ խորամանկ Օմարի գրպանները լցվում էին Ալիի և նրա նման երեխաների արյուն-քրտինքով վաստակած փողերով։

Ալին երազում էր ու չէր հուսահատվում։

Եկավ մայիսը։ Այդ առավոտ, ինչպես միշտ, Աշխան փոքրիկ Ալիին ճանապարհ դնելիս վերցրեց մի բաժակ ջուր, մրմնջաց մի աղոթք և թափեց այն որդու հետևից, որպեսզի նրա առևտուրը սահուն լիներ՝ ինչպես ջուրը։

Շուտով փարատվող աղջամուղջում մայրը լսեց հեռացող որդու հուզող կանչը.

— Շոկոլադ ալա հալի՜բ,

շիրիթ բո՜տ, շիրիթ սըրրա՜տ...

Այրին երջանկությունից լաց եղավ։

Ալին հանելով պարսկական սրճարանին, կանգնեց սեղանների մոտ։

Այստեղ հարուստ մարդիկ իրենց առավոտյան սուրճն էին խմում և փոքրիկին ուրախացնում իրենց մանր գնումներով։ Սակայն սրճարանը տարօրինակ կերպով դատարկ էր. սեղանները անգործությունից ասես հորանջում էին։ Տեր պարսիկը մրափում էր վաճառասեղանի հետև։

Ինչո՞ւ։ Ի՞նչ էր պատահել...

Փոքրիկ Ալին տխրեց այս անսպասելի անհաջողությունից։

Միգուցե դեռ շատ շու՞տ է։ Չէ՞ որ լույսը նոր է բացվում։

Փոքրիկը տխուր դուրս սողոսկեց ճաղերի միջից դեպի հրապարակը, այն հույսով, որ այնտեղ գնորդներ կլինեն։ Բայց ոչ ոք չարձագանքեց նրա տխուր ձայնին։ Հրապարակը նույնպես ամայի էր։

Անբացատրելի ամայություն։ Չէ՞ որ սա քաղաքի սիրտն է, ամեն առավոտ այստեղով էին անցնում գործի շտապող գործավորներն ու խանութպանները, ոտաբոբիկ և շալակներին խոշոր զամբյուղ կապած ծեր ու ջահել բեռնակիրները, շուկա գնացող տնտեսուհիները։

Հապա ու՞ր են նրանք...

Ալին վազում էր, Ալին կանչում էր լալու չափ հուզված ու տրտում.

— Շոկոլադ ալա հալի՜բ...

Բայց իզու՜ր։ Գնորդներ չկային։

Ալին վազում էր, անվե՜րջ վազում։ Ահա նավահանգիստը, ահա ծովը։ Նոր բացվող արևը Ջաբել լեռների ուսից իր չքնաղ ճառագայթները սփռում էր Միջերկրականի ալիքավորվող կապույտ ու լազուր ջրերի վրա. իսկ նավահանգիստը մռայլորեն լուռ էր ու խոժոռ։ Չէին աշխատում բեռնակիրները, չէին աշխատում վերամբարձ կռունկները։ Ասես անշարժացել էր նավերի խիտ անտառը։ Միայն նրանց շչակները մերթ ընդ մերթ իրենց հուսահատեցնող ձայներն էին արձակում նավամատույցի և քաղաքի վրա։

Ալին ապակու կտորտանքներից արյունոտված ոտքերը ուղղեց դեպի երկաթագործների շուկան, ուր բարի մարդիկ փոքրիկին սիրով էին դիմավորում միշտ, ուր Ալին իրեն զգում էր ինչպես յուրայինների մոտ և ժամերով հիացած նայում էր նրանց անհողաթափ մուրճերի տակ կերպարանափոխվող շիկացած մետաղների կայծային անձրևին,



փոքրիկ փուքս քաշողների քրտնաթոր աշխատանքին։ Ուր Ալին երազում էր իր ապագայի մասին...

Ալին երազում էր դառնալ երկաթագործ։ Դա նրա սրտի մուրազն էր։ Աշնան եւ գիտեր որդու երազը։ Մայրն ուրախանում էր, որ տղան շուտով կմտնի աշխատանքի, իսկական աշխատանքի աշխարհը։ Նա հպարտանում էր։ Բայց Ալին դեռևս թույլ էր, փոքր, չէ՞ որ նա հազիվ տասը տարեկան էր, այդ տարիքին մուրճ չես վերցնի։ Իհարկե, կգա օրը, երբ Ալիի մկանները կսկսեն ամրանալ մի քիչ, և այն ժամանակ, իր սիրելին, իր մինուճարը կդառնա հաղթանդամ մի դարբին։ Երանի՜ Աշնան տեսնի այդ օրը...

Ալին մոտեցավ առաջին խանութին։ Խանութը փակ էր, իսկ դրսի սալի վրա նստած էր թիկնավետ, երիտասարդ մի դարբին. Դա Հանեսն էր, Ալու ծանոթը։ Նրա շուրջը խռնվել էին մարդիկ ու վիճում էին ինչ-որ բանի շուրջ։

Ալին հասնելով նրանց մոտ՝ անսպասելի, երկչոտ ու բեկբեկուն ձայնով կանչեց.

— Շոկոլադ ալա հալի՜ բ,
շիրիթ բո՜տ, շիրիթ սրբբա՜տ...

— Է՛յ, Ալի՛, լռի՛ր, չե՞ս տեսնում, որ օրը առևտրի օր չէ,—սաստեց Հանեսը։

Ալին իսկույն լռեց, ինչպես ապտակ ստացած երեխա, փակեց կողովի բերանը և գլխիկոր հեռացավ։

Զգիտես ինչու, օրը անհաջող օր է, մարդիկ մռայլ են, կռվարար, վիճում են, չեն աշխատում, խանութներն ու սրճարանները դատարկ են, գնորդներ չկան։

Ալին վազում էր, անվերջ վազում։ Նա դարձյալ հասավ կենտրոնական հրապարակը։ Ալին կանգ առավ զարմացած։ Նորից ամայություն։ Նա լաց է լինում, չէ՞ որ այսօր ոչ մի գրոշի առևտուր չէր արել, չէ՞ որ տանը հաց չունեին, մայրը սպասում էր հացի, ինչպե՞ս ներկայանար մորը, ինչպե՞ս կդիմավորեր խանութպանը...

Երեխան մտավ գյուղայգի, ևշուր գնորդներ փնտրեց և հուսահատ ու հոգնած նկավ-նստեց մուտքի մոտի սլացիկ արմավենու տակ՝ սպասելով գնորդների։

Արևը արդեն բարձրացել էր զենիթ։ Շոգ էր։ Ալին աննկատելիորեն քնեց՝ կողովը պինդ բռնած ծնկների արանքում։

Ալին երազում տեսավ, որ ինքը դարբին է, աշխատանքից տուն է վերադառնում և...

Նա հանկարծ զարթնեց ինչ-որ անսովոր աղմուկից։ Քիչ առաջվա ամայի հրապարակը հետզհետե լցվում էր թափորներով և դրոշակակիր մարդկանցով։

Երա՞զ է արդյոք...

Ինչ-որ մարդիկ ճառեր էին ասում։

Ամբոխը ալեքավորվում էր, մարդիկ գոռում էին, գոչում ինչ-որ մեկի հասցեին։ Ալին ապշած նայում էր, լսում և բան չէր հասկանում։

Հրապարակը քիչ-քիչ ծովանում էր։ Ալիի աչքերի առաջ հետզհետե բարձրանում էր հսկայական, ժողովրդական ցասումի ալիքը։

Հրապարակը տնքում էր, մարդիկ մռնչում էին, ու ծովածավալ ամբոխը դուրս էր նետվում իր հունից։

Դիմացի կառավարական շենքի պատշգամբում երևացին ինչ-որ մարդիկ։ Նրանք սկսեցին խոսել, բայց Ալին չհասկացավ նրանց։

Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ



*Ժողովուրդը նորից խլրտաց, մռնչաց և ծովամռունչ ու հազարաձայն սկսեց երգել։*

*Քիչ հետո ամբոխի ուսերից վերև երևաց հսկա մի մարդ։ Նրա առնական ձայնը տարածվեց հրապարակի վրա՝ որպես մարտակոչ։ Լռեց մարդկային ծովը և խաղաղվեց մի թափից։ Ալին ճանաչեց խոսողին, դարբին Հաննեսին։ Նա խոսում էր ինչ-որ անարդարության մասին, հացի ու իրավունքների մասին։ Հետո դարբինը լռեց։ Ամբոխը կռացավ ինչպես մի մարդ և սկսեց քարեր շպրտել դեպի կառավարական շենքը։*

*Այդ քարկոծումը որքան տևեց, Ալին լավ չէր հիշում։ Նա զգաց միայն, որ խելառ ալիքը հասավ իրեն, և ինքը ակամա, բնազդով դարձավ այդ ալիքի գրոհող մի մասնիկը։*

*Նա ձեռքի կողովը պինդ բռնած, սկսեց քարկոծել, քարկոծել, անընդհատ քարկոծել, անվե՜րջ քարկոծել...*

*Ձախից, ուր գտնվում էր ֆրանսիական ոստիկանությունը, լսվեցին գնդացիրների ամեն ինչ խլացնող կրակոցները։*

*Բայց Ալին ոչինչ չէր լսում։ Նա քարեր էր նետում ու կարծես այդ քարերի հետ իր դժգոհությունն էր նետում այն մարդկանց վրա, որոնք խլել են իր և մայրիկի հացը ու իրեն, փոքրիկ Ալուն նետել փողոց՝ մանրավաճառի զամբյուղը ձեռքին։*

# ԵՎ ԻՆՉՈ՞Ւ ՄԱՅՐՍ ԿԱՐՈՒՄ ԷՐ ՈՂՋ ԳԻՇԵՐ

*ԱՐՏ. ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ*

*Նկ. Ն. ՔՈԹԱՆՋՅԱՆԻ*

— Մայրիկ, դասը դեռ չէր վերջացել, երբ պարոն վարիչը ներս մտավ ու ասաց.

«Երեխանե՛ր, վաղը մեր ուսումնարանն է այցելելու գավառային տեսուչը։ Մենք պետք է դիմավորենք նրան, իսկ ձեզանից մեկը, նա, ով ուսումնարանի բացարձակ գերազանցիկն է, ծաղկեփունջ պետք է նվիրի պարոն տեսչին ու պատասխանի նրա հարցերին»։ Երբ այդ ասաց, մեր ամբողջ դասարանը շրջվեց ու սկսեց ինձ նայել, պարոն վարիչը նկատեց դա ու մոտենալով ինձ, ասաց.

«Բենիկ Այվազյան, պարոն տեսչին ողջունելու ես դու։ Ուսումնարան կգաս գեղեցիկ ու մաքուր հագնված։ Չգիտեմ, հայտնիր ծնողներիդ։ Աշխատիր դուր գալ նրան։ Նա քո մասին գիտե»։ Լսո՞ւմ ես, մայրի՛կ, հենց այդպես էլ ասաց։ «Նա քո մասին գիտե»։ Իսկ ամբողջ դասարանը ինձ էր նայում։ Մա,—արագ-արագ շարունակում էի ես,— իսկ ի՞նչ պիտի հագնեմ, մա։

Մայրս նայում էր ինձ պայծառ, բայց տխուր աչքերով։ Ու քանի ես խոսում էի, այնքան ավելի ամուր էր գրկում ինձ։ Հետո բաց թողեց, նայեց ու նորից գրկեց։ Մի ուրիշ տեսակ էր նայում։ Նա ուրախ էր, ես զգում էի այդ, չէր ժպտում, բայց ուրախ էր։

Դուռը թակեցին։ Մայրս գնաց բացելու, և կիսաբաց դռնից լսեցի, թե ինչպես նա շշուկով հայտնում էր հորս՝ ինձ հետ կատարվածի մասին։ Հետո նրանք մի քանի անգամ արտասանեցին «կոշիկներ», «յարտք», «մի տեղից գտնել» բառերը։

Ես նայեցի իմ կոշիկներին։ Նրանք արդեն մաշվել էին։ Մտածեցի, որ մայրս ճիշտ էր նախատում ինձ, երբ դրանցով գնդակ էի խաղում։ Պետք չէր։ Ա՛յ, տեսնում եմ, հիմա հարկավոր է, որ լավ երևան, իսկ ինչի՞ են նման... Ասես Աբու Հասանի մաշիկները լինեն։

Իսկ նրանք շարունակում էին շշուկով խոսել։ Հետո մայրս սենյակ մտավ։

— Հայրիկն ո՞ւր գնաց,— հարցրեցի ես։

—Հիմա կգա,— պատասխանեց մայրս ու պահարանը բացելով այնտեղից հանեց հորս համարյա նոր վերնաշապիկը՝ վառ կանաչ գույնի, ու սկսեց քանդել այն։

— Ինչո՞ւ...

— Հորդ հարկավոր չէ,— ասաց մայրս,— փորձում եմ, որ վաղը հագնես։

Իրիկնադեմին տուն դարձավ նաև հայրս՝ հոգնած, բայց գոհ։ Նա ինձ համար բերել էր մի զույգ լավ, թաղիքե, երկար թելերով կոշիկներ, հեքիաթային կոշիկներ։

— Վերցրո՛ւ,— ասաց նա՝ չկարողանալով թաքցնել ուրախությունը, վաղը կհագնես։ Ճիշտ է, հիմա շոգ կլինի, սրանք ձմեռվա համար են, բայց շատ դիմացկուն են։

Ես գրկեցի նրան՝ հրճվանքից կաս-կարմիր կտրած, բայց համոզված, որ հիմա հետ կհրի։ Նա չէր սիրում, երբ մենք՝ երեխաներս մոտենում էինք իրեն։ Բայց այս անգամ ետ չհրեց ու միայն կոշտ, ճաքճքված մատներով շոյեց գլուխս, այնպես, որ ես հազիվ արցունքներս զսպեցի։



Հետո ես պառկեցի քնելու, իսկ նրանք երկար ժամանակ խոսում էին։

— Ով գիտե, թե դուր գա, գուցե թողնեն, որ իրենց հաշվին շարունակի ուսումը,— ասում էր հայրս։

— Տա՜ աստված,— հառաչում էր մայրս։

Հետո թախտը ճռռաց։ Այդ հայրս էր, որ պառկեց քնելու։ Իսկ իմ քունը բոլորովին չէր տանում։ Աչքերիս առջև անընդհատ մեր ուսումնարանն էր, իսկ ականջիս արդեն քանի՜-քանիերորդ անգամ հնչում էին վարիչի խոսքերը. «Ի՞նչ հարցեր կտա պարոն տեսուչը,—մտածում էի ես,—կկարողանա՞մ լավ պատասխանել։ Տեսնես ի՞նչ մարդ է։ Երևի երկարահասակ, նիհար, փոքրիկ աչքերով ու մեծ, մինչև ականջները ոլորած բեղերով, ինչպես այն նկարի մարդը, որ կախված է մեր դասասենյակի պատին»։

Հայրս քնեց։ Իսկ մայրս լամպի լույսի տակ շարունակում էր անշշուկ քանդել նրա բլուզը։ Հետո ես տեսա, որ նա դուրս եկավ տանից ու քիչ հետո վերադարձավ, իր հետ բերելով մեր հարևանի կարի մեքենան։

—Թը՛խկ-թը՛խկ, թը՛խկ-թը՛խկ,—կարում էր մայրս։

Ես պատկերացրի վաղվա հանդեսը։ Ահա բոլոր աշակերտները իրենց տոնական հագուստներով, և ես իմ հրաշալի կոշիկներով ու կանաչ բլուզով։ Նվագախումբը ինչ-որ ուրախ երգ է հնչեցնում, Հետո հանկարծ բոլորը քարանում են, ու ներս է մտնում պարոն տեսուչը, ժպտում է, բարձրացնում է ձեռքը ու հարցնում. «Ո՞րտեղ է գերազանցիկ Բենիկ Այվազյանը, ես գիտեմ նրա մասին»։ Ես առաջ եմ գալիս, գլուխ եմ տալիս ու...

— Թը՛խկ-թը՛խկ, թը՛խկ-թը՛խկ։

Այս ի՞նչ է։ Հա՜, կարի մեքենա է։ Մայրս իմ բլուզն է կարում։ Բայց ինչո՞ւ այդքան ցածր է թխթխկացնում մեքենան: Երևի նվագախումբը շատ բարձր է նվագում։ Ի՞նչ նվագախումբ։ Հա՛, դե իհարկե...

Ու ես քնեցի։

Իսկ մայրս կարում էր ողջ գիշեր։

* * *

Այդ օրը մենք առաջին ժամ չունեցանք։ Տեսուչը շուտ էր գալու, և մեր ուսումնարանը նախապատրաստվում էր։ Վարժապետներն ու վարժուհիները հուզված դեմքերով այս ու այն կողմ էին գնում։ Պարոն վարիչը կարգադրություններ էր անում։ Իսկ մենք խումբ-խումբ հավաքվել էինք դասասենյակում ու սրտատրոփ սպասում էինք շարվելու ազդանշանին։

Ես հագել էի իմ կանաչ բլուզը և նոր կոշիկները, երկար թելերը մի քանի անգամ ոտքերի շուրջը փաթաթելով։ Իհարկե, այդ ամենը հեռու էին դասընկերներիս հագուստների նոխությունից, բայց և այնպես, իմ կարծիքով բոլորովին էլ վատ չէր։ Թեև, անկեղծորեն ասած, տանը նրանք հարյուր անգամ ավելի գեղեցիկ էին թվում։

Շեփորը ուժգին հնչեց։ Մենք արագորեն դուրս թռանք սենյակներից ու հավաքվեցինք միջանցքում.

— Շարվի՛ր, մե՛կ, երկո՛ւ,—կարգադրեց պարոն վարիչը, ու մենք իսկույն գրավեցինք մեր տեղերը։ Ես, իհարկե, ծաղկեփունջը ձեռքիս կանգնեցի բոլորի առջևում, ինչպես ինձ ասել էին... Սիրտս ուռչում էր հպարտությունից ու հուզմունքից։ Բոլորն ինձ էին նայում։ Հիմա ներս կմտնի պարոն տեսուչը, կտեսնի ինձ... Ափսոս, որ հայրս ու մայրս այստեղ չեն։ Ի՜նչ լավ կլիներ, որ այստեղ լինեին, Մայրիկս անպայման կժպտար։ Պարոն վարիչը

դանդաղաքայլ անցավ մեր շարքերի առջևով և կարծես թե գոհ մնաց։ Հետո հանկարծ նկատեց ինձ ու նայեց մի տեսակ սառը, ծակող հայացքով, որից ես վատ զգացի։ Նայեց իմ ձմեռային ճտքավոր կոշիկներին, շալվարիս, բլուզիս... Հետո մոտ կանչեց վարժուհիներից մեկին ու կամացուկ ինչ-որ բան ասաց։

Վարժուհին արագորեն մոտենալով ինձ, ձեռքիցս վերցրեց ծաղկեփունջը, երկրորդ շարքում կանգնած մեկին բերեց կանգնեցրեց իմ տեղում, իսկ ինձ հըրելով նրա տեղը տարավ։ Հետո ետ-ետ գնաց, կկոցեց մի աչքը, ինչպես մարդիկ նկարների ցուցահանդեսում են անում, ապա մոտենալով, այս անգամ չորրորդ շարքից մեկին բերեց, կանգնեցրեց իմ տեղում, իսկ ինձ առաջվա նման հրելով՝ նրա տեղը տարավ։

Ես մեքենայորեն ենթարկվում էի նրան, առանց հասկանալու, թե ինչ է կատարվում ինձ հետ։ Մըտածում էի, որ դա թյուրիմացություն է, որ հիմա, ուր որ է, պարոն վարիչը կուղղի սխալը։ Երևի չճանաչեց։ Չէ՞ որ բացարձակ գերազանցիկը ես եմ, Այդ հո բոլորը գիտեն։ Դե, իհարկե, չճանաչեց։ Ես ախր նոր բլուզ ու կոշիկներ եմ հագել։ Բայց չէ. վարժուհին մոտեցավ պարոն վարիչին ու նրանք երկուսով սկսեցին կկոցած աչքերով նայել մեզ։

— Այվազյանը աչք է ծակում,— բարձրաձայն անբավականությամբ քրթմնջաց պարոն վարիչը,— մի՞թե չէին կարող մի կարգին շոր հագցնել։ Բոլորը սպիտակ են հագել, իսկ սա՝ կոպիտ, կանաչ։ Եվ վերջապես այդ ի՞նչ կոշիկներ են... թաղիքե... այս շոգին։

— Կուզե՞ք վերջին շարքը տանեմ,— պատրաստակամություն հայտնեց վարժուհին։

— Ո՛չ, ո՛չ, վերջում հո կերևա,— ընդհատեց նրան պարոն վարիչը,— ուղղակի մի տեղ խցկեք մեջտեղում։

Նա այդպես էլ ասաց. «Խցկեք»։

Հետո նույն վարժուհին նորից մոտեցավ ու ինձ տարավ նախավերջին շարքը։

— Պարոն տեսուչը գալիս է,— հնչեց մեկի ձայնը։ Նվագախումբը ինչ-որ քայլերգ սկսեց։

Ես դուրս փախա շարքից, մտա ամենամոտ դասասենյակը ու ընկա նստարանին։ Ինձ ոչ ոք չնկատեց։ Ուզում էի լաց լինել վիրավորանքից ու զայրույթից, բայց չէի կարողանում։

Միջանցքում ինչ-որ մեկը արդեն խոսում էր, նըրան ծափահարեցին, բայց նա շարունակեց խոսել, Հետո բոլորը կանչեցին «ուռռա՜» և նվագախումբը նորից նվագել սկսեց։

«Պարոն տեսուչն է» — մտածեցի ես։ Ու, չգիտեմ ինչու, միանգամից անասելի ատելություն զգացի այդ մարդու նկատմամբ, որին երբեք չէի տեսել և ոչ միայն նրա նկատմամբ։ Ես ատում էի նրան էլ, պարոն վարիչին էլ, վարժուհուն էլ, բոլորին, բոլորին, ովքեր կանգնել էին այնտեղ, միջանցքում՝ սպիտակ բլուզներով ու ամառային թեթև կոշիկներով, բոլորին, ում դուր չեկավ իմ հայրիկի... իմ կանաչ բլուզը։ Ես ուզում էի դուրս վազել այդ դատարկ սենյակից, ոտքերով դոփել հատակին, ըն-



Շ. ԹԱԹԻԿՅԱՆ

Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

*Հայրիկը չի սիրում, որ իր սեղանի վրա զարդարանքներ դրված լինեն։ Նրա ծննդյան օրը հորաքույրը նրան մի գեղեցիկ արձանիկ նվիրեց։ Հիանալի արձանիկ էր։ Հախճապակուց պատրաստված որսորդական մի շուն էր, որ դունչը դրել էր թաթերին և նայում էր իր առաջ։ Այնքա՜ն խելացի ու բնական էին շան աչքերը, որ Սուրիկին շարունակ թվում էր, թե ահա շունը կկենդանանա, կվազվզի, կշարժվի։*

*Բայց հայրիկը չի սիրում, որ իր աշխատասեղանին զանազան, ինչպես ինքն է ասում, զիգի-բիգի բաներ դրված լի-*



չալ, խանգարել նրանց... որ չծիծաղեն, որ չերգեն, որ չխոսեն նրանք։

Ինչո՞ւ ինձ հանեցին շարքից։

Ես նայում էի իմ թաղիքե կոշիկներին, որոնք միանգամից կորցրել էին իրենց գեղեցկությունը, շալվարիս, որ փոշուց գունաթափված էր։ Իմ նոր, իմ կանաչ բլուզին, որ ամբողջ գիշեր լամպի լույսի տակ կարում էր մայրս։

— Թը՛խկ-թը՛խկ, թը՛խկ-թը՛խկ, թը՛խկ-թը՛խկ...

Էլ ինչո՞ւ մայրս կարում էր ողջ գիշեր։

---

*նեն։*

*— Ձուր տեղ են բռնում, — ասում է, — խանգարում են աշխատել։*

*Եվ շնիկի արձանիկը դրվեց դաշնամուրի վրա։*

*Հենց այդ օրերին էր, որ Սուրիկը մի փայտե արկղ պատրաստեց։*

*Ահա թե ինչպես պատահեց դա։*

*Հայրիկը վաղուց նրա համար գործիքներ էր գնել. սղոց, մուրճ, ռանդա և մեկ էլ տեսար՝ բարկացած ժամանակ Սուրիկին հանդիմանում էր։*

*— Ահագին տղա ես, արդեն երրորդ դասարանի աշակերտ, բայց ոչ մի խելացի գործ չես կարողանում անել։ Այսքան գործիքներ ունես, բայց դեռ չեմ տեսել մի կարգին բան պատրաստես։*

*Սուրիկը բոլորովին չէր էլ ուզում, որ հայրիկն այդպես ամոթանք տա իրեն, բայց չէր իմանում, թե ինչ պատրաստի։ Ինչ էլ որ փորձում էր, չէր ստացվում։ Կամ փայտը սխալ էր սղոցում կամ խփած մեխերն էին ծռվում՝ Սուրիկին կասկածանքի մեջ գցելով, թե մեխերը շատ փափուկ են և անորակ։*

*Բայց վերջերս Սուրիկին հաջողվեց մի արկղիկ պատրաստել։ Փոքրի՛կ-փոքրի՛կ արկղիկ, որի մեջ հազիվ մի քանի սեռին ու գրչածայր կտեղավորվեր։ Սուրիկն ինքն էլ չէր իմանում, թե ինչի կարող էր պետք գալ այդպիսի մի ար-*

կղիկը, բայց երբ պատրաստեց, շատ ուրախացավ։ Նախ, այնքան էլ ծուռ ու մուռ չէր և խուփն էլ բավականին հարմար էր ստացվել։

Վերջապես, չէ՞ որ ինքն էր պատրաստել իր ձեռքով։

Երբ հայրիկն աշխատանքից եկավ, Սուրիկն անմիջապես նրան ցույց տվեց արկղիկը։



— Դու՞ ես պատրաստել,— հարցրեց հայրիկը։

— Ես...

— Հայրիկը ժպտում էր։ Սուրիկը շատ լավ էր հասկանում հայրիկի ժպիտները, որոնք սովորաբար, շատ-շատ տարբեր էին լինում. հիասթափությունն արտահայտող, հեգնական։ Սուրիկն անմիջապես հասկացավ, որ հայրիկը հիմա ժպտում է գոհ և ուրախ։ Նա ժպտում էր ու ձեռքում շուռ ու մուռ տալով արկղիկը, ուշադրությամբ զննում։ Վերջապես նա՛ հարցրեց.

— Իսկ ի՞նչ պետք է անես դու այս արկղիկը։

Սուրիկը ինքն էլ չգիտեր։ Նա միայն ուսերը թոթվեց.

— Դե,— ասաց հայրիկը,— եթե քեզ հարկավոր չէ, ապա ինձ նվիրիր, հա՞...

Հայրիկի այդ անսպասելի հարցից Սուրիկը մինչև անգամ շփոթվեց։ Սկզբում չհասկացավ, կատակ էր անում նա, թե՞ լուրջ էր ասում, բայց հետո շշնջաց.

— Կնվիրեմ, ինչո՞ւ չէ... կնվիրեմ...

* * *

Հայրիկը չի սիրում, որ իր սեղանի վրա զարդարանքներ դրված լինեն;

— Զուր տեղ են բռնում,— ասում է նա,— խանգարում են աշխատել։

Բայց հայրիկն իր սեղանի վրա էր դրել Սուրիկի պատրաստած այդ արկղիկը։ Սուրիկը դրանից հետո ուրիշ բան էլ է սարքել, սայլակ, փոքրիկ սեղան, աթոռներ, բայց հայրիկի սեղանին դարձյալ մնում է այն արկղիկը։

Հայրիկը, երբ աշխատելիս հոգնում է, նայում է Սուրիկի պատրաստած արկղիկին ու ժպտում...

# Մեր պատանի ստեղծագործողները

Երևանի Պիոներների պալատը վերջերս հայտարարել էր մանուկ ու պատանի ստեղծագործողների բանաստեղծությունների և պատմվածքների մրցանակաբաշխություն:

Պալատի գրական խմբակի (ղեկավար՝ ՍՈՒՍԱՆՆԱ ԲԱԲԱՅԱՆ) հասցեով ստացվեց մոտավորապես 500 ստեղծագործություն:

Տպագրում ենք մրցանակի արժանացած գործերից մի քանիսը:

## ՉՈՐՍ ԵՂԲԱՅՐՆԵՐ

Չորս նկարիչ եղբայրներ,
Չորսն էլ հսկաներ,
Որոշեցին նկարել
Երկրագունդը մեր։

Փոքր եղբայրը նրանց՝
Անունը Գարուն,
Աշխարհը մեր նկարեց
Զքնաղ ու սիրուն։

Երկրորդ եղբայրը նրանց՝
Անունը Ամառ,
Աշխարհը մեր նկարեց
Ալ ու հրավառ։

Երրորդ եղբայրը նրանց՝
Անունը Աշուն,
Ողջ աշխարհը նկարեց
Դեղին ու նախշուն։

Իսկ մեծ եղբայրը նրանց՝
Ալեհեր ու ծեր,
Ճերմակ ներկեց աշխարհը
Ու կոչեց «Ձմեռ»։

*ԲՈՒԼԻԿՅԱՆ ՌԱՖԻԿ*

(64-րդ դպրոցի աշակերտ)

## ԽՈՐԱՄԱՆԿ աղվեսը

*ՄՈՒՐԱԴՅԱՆ ՌՈՍՏԵՐ*

(Սպիտակի շրջան, Գեղարոտ գյուղ, 5-րդ դասարանի աշակերտ)



Հովիվ — ԲԱԲԱՅԱՆ ՍԱՀԱԿ (Գորիսի № 3 դպրոցի 7-րդ դաս. աշակերտ)

# ԻՄ ՓՈՔՐԻԿ ԲԱՐԵԿԱՄԸ

Մի անգամ գյուղից մեզ մոտ հյուր եկավ մորաքույրս իր թոռնիկ Գայանեի հետ։ Գայանեն երեք տարեկան էր, երկնագույն աչքերով, կաթի նման սպիտակ դեմքով և շեկ մազերով մի աղջիկ։ Մենք շատ սիրեցինք նրան, մայրս նրան նվիրեց մի կարմիր, լայն ժապավեն, իսկ ես ժապավենը կապեցի Գայանեի մազերին։ Երբ մորաքույրս ուզում էր մեկնել, երկար թախանձելուց հետո մենք Գայանեին պահեցինք մեր տանը։

Այդ օրը ես ու մայրս շատ զբաղված էինք, սկզբում Գայանեն իմ կողքին էր և աշխատում էր ինձ հետ վերմակները դուրս տանել, գրասեղանս մաքրել, բայց հանկարծ անհայտացավ։ Գործներս թողած, սկսեցինք փնտրել, բայց նա չկար ու չկար։ Մայրս խիստ անհանգստացած հանդիմանում էր ինձ, որ ուրիշի երեխայի պատասխանատվությունը ինձ վրա էի վերցրել, ես էլ քիչ չէի անհանգստանում, բայց հույս ունեի, որ Գայանեն ինձանից հեռու չի գնա։

Եվ հանկարծ գլխումս մի միտք փայլատակեց... Գայանեն բակում սիրում էր վազվզել հավերի հետևից... Վազեցի դեպի հավանոցը։ Գայանեն այնտեղ էր, նա ցանկացել էր բռնել մեր մեծ աքլորի պոչից, իսկ աքլորը ուր որ է կըտցելու էր նրա աչքը...

Ես արագ վրա հասա և բռնեցի աքլորին։ Գայանեն կարծես հասկացավ և շնորհակալություն արտահայտող հայացքով նայեց ինձ, իսկ ես երբ նրան մեկնեցի աքլորս, նա վախեցած ետ-ետ գնաց։

Հաջորդ օրը շաբաթ էր։ Երբ դպրոցից տուն եկա, սկսեցի նկարել։ Գայանեն նույնպես սկսեց նկարել։ Ճաշի ժամանակ ես հրաժարվեցի ճաշից, մայրս չըստիպեց ուտել, իսկ երբ Գայանեին հարցրեց, թե ինչու ճաշ չի ուտում, նա պատասխանեց.

— Սամվելը չի ուտում, ես էլ չեմ ուտի։

Ստիպված էի ուտել, որպեսզի Գայանեն էլ ուտի։ Ճաշից հետո Գայանեի համար մի մանկական գիրք կարդացի և

բացատրեցի։ Ես սովորություն ունեի քնելուց առաջ բոլորին «բարի գիշեր» ասել։ Երբ այդ օրն էլ ասացի, Գայանեն էլ կրկնեց։ Դպրոց գնալու ժամին վըզկապ էի կապում, Գայանեն էլ ցանկացավ վզկապ ունենալ։ Այդ ժամանակ մայրս արձակեց նրա մազերից կարմիր ժապավենը և կապեց վզին որպես վզկապ։

Երեկոյան ես գնացի դրսում մի քիչ խաղալու։ Մայրս պատշգամբից ինձ միշտ զգուշացնում էր, բայց ես հեռեն վազում էի։ Մեկ էլ տեսնենք, Գայանեն էլ է վազում, և մինչ քույրս կըբռներ նրան, նա ուժգին թափով վայր ընկավ։

— Սամվելը վազեց, ես էլ վազեցի,— ասաց նա արցունքների միջից։

Այդ դեպքից հետո, ես ամաչեցի և սկսեցի ինքս ինձ հսկել, ավելորդ բաներ չանել, որպեսզի Գայանեն էլ չաներ։ Մայրս էլ էր ինձանից գոհ։

Հաջորդ կիրակի մորաքույրս եկավ և ասաց, որ Գայանեին կարոտել են, և պետք է նրան անպայման տանի։ Ես գրկեցի Գայանեին և չթողեցի, որ գնա։

Բայց երբ դպրոցից տուն եկա, Գայանեն արդեն տանը չէր։ Ես շատ տըխրեցի և սկսեցի մտաբերել այդ տասնհինգ օրվա ընթացքում մեր տանը կատարած նրա արարքները։ Նա շատ լավ և վատ բաներ էր սովորել ինձանից և երևի հիմա գյուղում անընդհատ կրկնելու է. «Սամվելն էլ այդպես էր անում...»

Ա՜յ, լավ կլինի, եթե Գայանեն առավոտներն ինձ նման ատամները մաքրի, երեկոյան «բարի գիշեր» ասի և երգի իմ սովորեցրած երգերը։ Տնեցիները կզարմանան և կգովեն ինձ, իսկ եթե նա կրկնի վատերը՝ մորս չլսելը, չճաշելը, դասերից երբեմն ուշանալը...



Նկ. Ս. ՍԱՖՅԱՆԻ

Եվ ես որոշեցի երբեք չկրկնել դրանք։ Չգիտես ինչու, համոզված եմ, որ Գայանեն չի կրկնելու ոչ մի վատ բան իմ արարքներից, քանի որ ես ժամանակին ուղղեցի ինձ։ Եվ հետո, չէ՞ որ մենք լավ բարեկամներ ենք՝ ես և փոքրիկ Գայանեն։

ԿԱՐԱՊԵՏՅԱՆ ՍԱՄՎԵԼ
(45-րդ դպրոցի աշակերտ)



Նավ

ՏԱԹԵՎՅԱՆ ԱՐՄԵՆ
(Երևան, Ստալինի անվան դպրոցի աշակերտ, 8 տարեկան)

# Գ Ա Ր Ո Ւ Ն

Արշալույսն այսօր պայծառ է այնքան,
Ուրախ է ժպտում արևն ավելի,
Ոսկի վարսերն իր աշխարհով փռած
Ու աշխարհն արած իրեն հայելի։

Զեփյուռն է շոյում դաշտի դալարը,
Եվ այգիներն են բուրում ծաղկունքով,
Գետերը հիմա այնպես վարար են,
Ջրերը՝ լցված ուրախ աղմուկով։

Գառներն են մայում, վրնջում է ձին,
Հովվի սրինգն է դայլայլում զվարթ,
Բարդին՝ սլացիկ, ինչպես մի վրձին,
Զեփյուռից մեղմիկ ճոճվում է հանդարտ։

Գարնան կակա՜չ է իմ սիրտը հիմա,
Գարնան կակաչ է փողկապս կարմիր,
Ես էլ եմ ուզում թռչունի նման
Սավառնել կապույտ երկնքում անծիր։

*ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ ԾՈՎԻՆԱՐ*
(Կրուպսկայայի անվան դպրոցի աշակերտուհի)

## Ծառատունկ

Փոքրիկ տունկ եմ դեռ դողդոջ,
Ունեմ տերև ու բողբոջ,
Ինձ տնկել են, որ աճեմ,
Ճյուղեր տամ ու կանաչեմ։

Ես էլ ձեզ պես փոքրիկ եմ,
Ձեզ պես քնքուշ ու դալար,
Ծառ կդառնամ ձեզ համար,
Պտուղ կտամ անհամար։

Մի՛ ճոճեք, որ չորանամ,
Այլ ջրեք, որ զորանամ,
Կիզող շոգից արևի
Ձեզ կլինեմ հովանի։

*ՄԱՆՈՒԿՅԱՆ ՎԱՐԴՈՒՀԻ*
(Մուրացանի անվան դպրոցի աշակերտուհի)

## ԿՈՐՑՐԱԾ ԵՐՋԱՆԿՈՒԹՅՈՒՆԸ

*Պայուսակը տեղափոխելով թևի տակ, նա մտազբաղ ու տխուր անցնում էր փողոցով։*

*Որքա՜ն երջանիկ էր մի ամիս առաջ, երբ ինքը պիոներական շարքերն էր անցնում, բայց այսօր... Աշոտը հիշեց տուրուդմբոցը, սարսափահար աղջիկներին, ջոկատավարին, որը վերցրեց վզկապը։ Կարծես այդ բոլորը քիչ էին։ Երեսի քերծվածքն էլ մի կողմից կսկծում և ստիպում էր ավելի շատ մտածել պատահածի մասին։ Իսկ նրա հետ պատահել էր հետևյալը։*

*Երկրորդ դասը թվաբանություն էր։ Ուսուցչուհին չէր եկել դպրոց։ Եվ երբ տղաներից մեկը, ուսուցչանոցից վերադառնալով, հայտնեց այդ մասին ընկերներին, բարձրացավ մի վայրենի աղմուկ-աղաղակ։ Լսելի էին մի քանիսի բարձր «ուռա»-ները։ Դիրեկտորի առանձնասենյակը հեռու չէր։ Լսելով աշակերտների գոռգոռոցը, նա մոտեցավ դասարանի դռանը։ Նրան նկատելով բոլորը լռեցին և ընդունեցին անմեղ տեսք, կարծես իրենք չէին աղմուկ-աղաղակ բարձրացնողները։ Ոմանք սկսեցին ամբաց-*

նել կոշիկի կապերը, մի քանիսը կախիչից վերցրին վերարկուները, որոնց կարիքը չէր էլ զգացվում։ Բոլորն էլ գիտեին, որ Վոլոդյան գնդակ է բերելու և տղաներով ֆուտբոլ են խաղալու։ Լռության մեջ հնչեց դիրեկտորի ձայնը։

— Դուք ուրախանում եք, որ ձեր ուսուցչուհին հիվանդ է։ Եթե ընկեր Սարգըսյանը իմանա, գիտե՞ք ինչպես կվիրավորվի։

— Վա՛յ, ի՞նչ եք ասում, ընդհակառակը ետ կմնանք ծրագրից,— ասացին մի երկուսը։

— Լա՛վ, այսօր խաղացեք, իսկ վաղը ուսուցիչներից մեկը կփոխարինի ընկեր Սարգսյանին։ — Այս ասելուց հետո դիրեկտորը գնաց։

— Լավ կանեք չուղարկեք,— նրա հետևից ասաց Ջղիկը։

Ընկերները ծիծաղեցին և զույգ-զույգ աստիճանները թռչելով վազեցին բակ։



Դարբասները քարերով նշանակելուց հետո, նրանք սկսեցին խաղալ։ Գնալով խաղը տաքացավ։ Այդ ժամանակ Ռազմիկի հարվածած գնդակը անցավ դարբասի քարերից մեկի վրայով։

— 3.0,— ուրախ բացականչեցին հակառակորդները։

— Քարի վրայով անցավ, գոլ չհաշվե՛ք,— ավելի բարձր բղավեցին Աշոտի խմբի անդամները։ Բայց ոչ մի խումբն էլ չզիջեց։ Սկսվեց վեճ, որը վերջացավ տուրուդմբոցով։ Կռվի էին բռնվել երկու խմբերի դարբասապահները՝ Աշոտն ու Գառնիկը։ Բռունցքների հարվածները իջնում էին, հաշվի չառնելով ո՛չ աչքը, ո՛չ քիթն ու բերանը։ Ավելի համարձակները ցանկացան նրանց բաժանել, բայց իրենք էլ հարվածներ ճաշակեցին և ետ նահանջեցին։

Հանկարծ մի ուժեղ ձեռք ետ քաշեց

## ԱՆՄԻՏ ԱՅԾԻԿԻ ԱՐԿԱԾՆԵՐԸ

(Սկիզբը տե՛ս «Պիոներ» № 3, 4, 5)



Ասաց.— Բարեկամ,
Տուր կաղին մի բուռ.
Սկյուռն էլ՝ կտամ,
Միայն փո՛ղը տուր։



— Ինձ փող որտեղի՞ց,—
Այծիկը տխրեց
Ու խրտվիլակից
Ուտելիք խնդրեց։



— Ջունեմ, խե՛ղճ այծիկ,—
Խրտվիլակն ասաց,
Երաշտ է սաստիկ,
Ես ի՛նքս եմ քաղցած։

Աշոտին։ Նա սթափվեց և տեսավ ավագ ջոկատավարին։ Ջոկատավարը լուռ հանեց կավողների վզկապները և տարավ ուսուցչանոց։ Դասղեկը տեղեկանալով պատահածին, երկուսին էլ ուղարկեց տուն՝ ծնող կանչելու։ Աշոտը շարունակ մտածում էր պատահածի մասին։ Բայց որքան մոտենում էր տանը, այնքան նրան տանջում էր այն հարցը, թե ինչպես արդարանա հոր մոտ, ինչ կասի դասղեկը իր մասին։ Մեկը մյուսից ծանր մտքերը հանգիստ չէին տալիս Աշոտին։ Բնությունը բնավ չէր համընկնում նրա տրամադրությանը, թեև փետրվար ամիսն էր, բայց ձյուն չկար. եղանակը գարնանային էր։ Նա ընազդաբար ձեռքը տարավ դեպի վերարկուի կոճակները, արձակեց և ցանկանում էր դուրս հանել վզկապը։ Նա այդպես էր անում մեկ ամսից ի վեր, այն օրից, երբ ինքը պիոներ դարձավ։ Հաճելի էր այդ։ Վզկապը քամուց փողփողում էր, իսկ Աշոտին թվում էր, թե բոլորն իրեն են նայում։ Վզկապը նա տեղում չգտավ, իսկ անցորդները իսկապես որ նրան էին նայում։ Հանկարծ ձախ այտի քերծվածքը սկսեց կծկծալ, և նա հասկացավ, թե ինչու են իրեն նայում։

ՍԱՐԴԱՐՅԱՆ ՑԵՆԻՔՍ
(Հակոբյանի անվան դպրոցի աշակերտ)

## ՆԿԱՐԻՉԸ

Նկարիչ եմ, նկարիչ,
Նկարում եմ ամեն ինչ։
Նկարեցի մի ուլիկ,
Սևուկ, սիրուն ու փոքրիկ.
Թռչկոտում է, մկկում,
Իր մայրիկին է կանչում։
Իսկ մայրիկը սիրասուն,
Մարգագետնում արածում,
Իր ուլիկին է հիշում։

ՊԱՐՍԱՄՅԱՆ ԱՆԱՀԻՏ
(Նալբանդյանի անվան դպրոցի աշակերտուհի)



Նկ. Ռ. ՄՈՒԹԱՖՅԱՆԻ

**Եթե այս երկու թերթը զգուշությամբ պոկեք ամսագրից, ծալեք երեք տակ և կտրեք, դարձյալ կստանաք մի փոքրիկ գրքույկ, ինչպես նախորդ անգամ։**



Ու նորից չափեց
Ճամփան ոլորուն,
Հասավ վերջապես
Մի քաղաք սիրուն։





Դարբասի պատին
Կար մի հրաման.
«Ով մորուք ունի՝
Գլխատել նրան»։



Անմիտի վզից
Մեկը պինդ բռնեց,
Տարավ ու կացնով
Գլուխը կտրեց։

գույշ, կոտրեցիր, թափեցիր, տեղը դիր, օ՜հ, ի՜նչ անկարգ ես դու: Է՜հ, ավելի լավ է ես անեմ, քան թե քեզ ասեմ»:

Ջէ՛, հիմա այդ բոլորի փոխարեն մայրիկը լուռ նայում էր ու ոչինչ չէր ասում:

Նորան նորից գնաց խոհանոց և իր համար ճաշ լցրեց մի փոքրիկ, սիրուն ափսեի մեջ, որի վրա երկու արջուկներ էին նկարված: Երբ ուզում էր սենյակ մտնել, ոտքը դիպավ պայուսակին, ցած ընկավ ու շրը՜խկ... ջարդվեց ափսեն:





Նորայի աչքերը արցունքով լցվեցին: Նա ուզեց լաց լինել, բայց զսպեց իրեն: Ջէ՞ որ մայրիկը հիվանդ է. գլուխը կցավի: Ապա մեղավոր հայացքով նայեց մայրիկին: Ի՞նչ կասի հիմա նա, կբարկանա՞, թե...

— Մայրիկ, ես...— ու էլ չկարողացավ շարունակել, լաց եղավ:

Մայրիկը շոյեց նրա գլուխը և ասաց.

— Լաց մի՛ լինի: Պետք է զգույշ լի-

— Ճիշտ է, հայրիկ ջան, դե հիմա դու էլ լվացվիր, որ ես ու դու միասին ճաշենք:



ռիկն էլ քաղցած լինի՞: Դե մենք միասին կճաշենք»:

Նորան ինչ-որ բանից ուրախացած վազեց սենյակ՝ ափսեներ բերելու:

Սկզբում լցրեց մայրիկի համար, ափսեն վերցրեց ու կամաց մտավ սենյակ: Ափսեն զգույշ դրեց աթոռին, հետո պահարանից հաց բերեց ու սկսեց անվարժ շարժումներով կտրտել:

Մայրիկը լուռ նայում էր նրան ու առաջվա նման չէր ասում. «Նորա՛, ըզ-





նեիր, որ չջարդվեր, իսկ հիմա լացը չի օգնի: Ա՛յ, եթե դու սկզբում պայուսակդ տեղը դնեիր և ոչ թե գցեիր հատակին, ճանապարհի վրա, այդպես չէր լինի: Դե, վե՛ր կաց, հավաքիր, հիմա բժիշկը կգա, կտեսնի թափթփված տունը և կմտածի, որ դու ծույլ, ալարկոտ աղջիկ ես, գործ անել չես սիրում:

Նորան վեր կացավ և սկսեց կարգի

Հիվանդ է մայրիկը, բայց Նորան հիմա գիտե, թե ինչ պետք է անի, որ մայրիկը հանգիստ լինի, իսկ սենյակը՝ մաքուր: Հայրիկն էլ գործարանից կգա ու կհանգըստանա, թե չէ՝ հոգնած գալիս է ու տունն է հավաքում:

Միջանցքում հնչեց զանգը:

—Ջա՜ն, հայրիկն է,— ծափ տվեց Նորան ու դուրս թռավ:

Իսկապես, հայրիկն էր:

— Հայրիկ ջան, թե իմանաս, ո՞վ է մաքրել տունը, ո՞վ է հավաքել սեղանը, հատակը մաքրել, մայրիկին ճաշ տվել...

—Էլ ո՞վ պետք է լինի,— ծիծաղեց հայրիկը,— քեզ նման խելոք աղջիկ ունենք, ամոթ չէ՞, ոլ, ուրիշները մաքրեն մեր տունը:



Վատ է, երբ հիվանդանում է մայրիկը. ամեն ինչ խառնվում է տանը:

Ստիպված նստելու ես քաղցած, մինչև հայրիկը գա: Հայրիկն էլ երբեմն այնպե՜ս է ուշանում, այնպե՜ս, որ քիչ է մընում լաց լինես:

Սենյակի անկյունում, պայուսակը ծընկներին դրած, նստել ու այսպես էր մտածում Նորան:

Նա նայում էր թափթփված անկողիններին, ուղեգորգի վրա ընկած թղթի կտորներին, մահճակալին պառկած մայրիկին ու չգիտեր ինչ աներ:



— Աղջիկս, ինչո՞ւ ես նստել, դպրոցից ես եկել և սոված ես, մորաքույրը ճաշ է ուղարկել, լցրու և կեր։

Նորան զարմացած նայեց մայրիկին։ Ինչպե՜ս թե «լցրու և կեր», այդ ե՞րբ է ինքը լցրել ու կերել։ Մայրիկը կարծես չգիտե, որ նա մեծ չէ, ընդամենը տասը տարեկան, և ասում է. «Լցրու և կեր»։

Գոնե մորաքույրը գար։ Հիմա ի՞նչ անի։ Երբ առողջ էր մայրիկը, նա կարծես թե կարող էր սպասել մինչև երեկո և հաց չուտել։ Իսկ հիմա հակառակի պես այնպե՜ս ուտել է ուզում, այնպե՜ս...

Նորան վեր կացավ, ծեռքի պայուսակը անփույթ կերպով նետեց մի կողմ ու գնաց խոհանոց։ Նայեց կերակրամանի մեջ ու մտածեց. «Եթե փորձեմ ես լցնել, այո, այ, հենց այս մեծ գդալով։ Իսկ եթե մայ-







բերել սենյակը։ Հավաքեց ափսեի կտորները, շորով մաքրեց հատակը, պայուսակը դրեց իր տեղը։ Հետո մաքրեց սեղանը ու ծածկեց սպիտակ սփռոցով։

Սենյակը մաքրելուց հետո լվացվեց և երբ տուն մտավ, շատ զարմացավ, որ ինքը չի հոգնել, ծնկները էլ չեն ցավում։ Իսկ տունը այնպե՜ս մաքուր էր, այնպե՜ս հաճելի։

Նա այլևս քաղց չէր զգում։ «Կմնամ մինչև հայրիկը գա, ու միասին կճաշենք» — մտածեց նա։

# ՄԱՅԻՍ

Մայի՛ս, մայի՛ս,
Սիրուն ամիս,
Եկար զարդով,
Կարմիր վարդով:

Մայի՛ս, մայի՛ս,
Նախշուն ամիս,
Կանաչ խոտով,
Ալ դրոշով:

ԳՐԻԳՈՐՅԱՆ ՀԱՍՄԻԿ
(27-րդ դպրոցի 3-րդ դասարանի աշակերտուհի)



Նորակառույց շենք

ՊՈՂՈՍՅԱՆ ՍԵՐՎԵՆՏ
(Երևան, Զարենցի անվան դպրոցի 4-րդ դաս. աշակերտ)



Մեր փողոցը

ՊՈՂՈՅԱՆ ՍԵՐԺԻԿ
(Աշտարակի շրջան, Ոսկեհատ գյուղի դպրոցի 2-րդ դասարանի աշակերտ)



Նրա մոտ գնաց
Կոշկակարն ահա,
Սիրտը մղկտաց,
Ասաց.— Խե՜ղճ տղա:



Իսկույն գրպանից
Թել, ասեղ հանեց,
Գլուխը մարմնին
Դրեց ու կարեց:



Նորից կյանք առավ
Այծիկը մեր խեղճ
Եվ կուշտ ճաշ կերավ
Փրկարարի հետ:

# Անուշ տիկնիկները

Լ. ԲԱՌՆԱԿՅԱՆ

Նկ. Ա. ԲՈՅԱՋՅԱՆԻ

Անահիտը թռչկոտում էր ու ասում.

— Ջա՜ն, ջա՜ն, ջա՜ն, մորաքույրս վաղը կգա և ինձ համար տիկնիկ կբերի։

— Այնպես ես ուրախացել, կարծես թե տիկնիկ չունես, տե՛ս, քանի հատ ունես,— ասաց Ցոլիկը։

— Ունեմ, բայց այդ մեկը նման չի սրանց, նա գործ անող տիկնիկ է։

— Ո՞նց թե,— զարմացավ Ցոլիկը,— բա գործ անող տիկնիկ կլինի՞...

— Այո՛, կա, և մորաքույրս ինձ համար կբերի։ Լավ կլինի, չէ՞, Ցոլիկ։ Սրանից հետո ես ու դու կնստենք ու կհրամայենք՝ տիկնի՛կ, այստեղ եկ, բեր մեր խաղալիքները, լվա մեր տիկնիկների շորերը, արդուկիր։ Իսկ երբ խաղը վերջացնենք, կասենք՝ հավաքիր խաղալիքները։

— Չեմ հավատում, այդպիսի տիկնիկ չի լինի։

— Իսկ ես հավատում եմ, ա՛յ, երեկ Սուսաննան պահարանի տակից հանում էր իմ գունավոր մատիտները և բարկանում ինձ վրա, ես նրան ասի. «ի՞նչ անեմ, տուփը փչացել է, և մատիտներս այս ու այն կողմ են ընկել»։ Նա ասաց. «Քեզ համար հարկավոր է մի գործ անող տիկնիկ գնել, որ հետևիցդ ման գա ու քո թափածները հավաքի»։

Ցոլիկը խոր շունչ քաշեց, եթե Սուսաննան է ասում, ուրեմն...

— Գիտես, Ցոլիկ, մայրիկը վրաներս էլ չի բարկանա և չի ասի. «եթե մյուս անգամ խաղալուց հետո ձեր խաղալիքները չհավաքեք, բոլորը վառարանը կլցնեմ»։

— Դե որ այդպես է, մինչև մայրիկդ դպրոցից գա, տիկնիկը մեր թափած խաղալիքներն էլ կհավաքի, ճաշն էլ կեփի։

— Ճիշտ ես ասում, մայրիկը աշխատանքից տուն կգա, ներս կմտնի ու կասի. «Ապրե՛ք, աղջիկներս, տունն այսօր շատ մաքուր եք պահել»։ Հետո կգնա խոհանոց



Ձայն լսեց դրսից.
—Էհե՜յ, ով որ կա,
Արքայադուստրի
Հանդեսին թող գա։



— Արքայադուստրը
Ում երգն հավանի,
Նա արքայական
Գավազան կառնի։



— Ջա՜ն, բախտս բանեց,—
Անմիտը ասաց
Ու պալատ վազեց
Մորուքը հյուսած։



և կտեսնի, որ ճաշը քը՛լթ-քը՛լթ եփում է...
Ա՛յ թե կզարմանա հա՜...

Հաջորդ օրը առավոտյան Ցոլիկը վազեց Անահիտի մոտ։

— Դեռ չի՞ եկել։

— Ո՛չ,— տխուր պատասխանեց Անահիտը։

— Բա հիմա ի՞նչ անենք։

— Արի տուն-տուն խաղանք։

Անահիտն ու Ցոլիկը մահճակալների տակից դուրս քաշեցին խաղալիքներով լի արկղները և հատակին թափեցին իրենց ողջ հարստությունը՝ մահճակալ, բարձ, վերմակ, սեղան, աթոռ, ճաշի ու թեյի ամաններ, արջ ու աքլոր, գիրք ու մատիտ... էլ ինչե՜ր ասես, որ չունեն։

— Հյուր է գալու, հյուր է գալու,— փըսփըսացին նրանք տիկնիկների ականջներին։

Դռան զանգը հնչեց։

Մորաքույրն էր, երեխաները վազեցին նրա մոտ։

— Մորաքո՛ւյր,— չհամբերեց Անահիտը։

— Այո՛, Անահիտ, ես բերել եմ տիկնիկը։

Ցոլիկն ու Անահիտը իրար նայեցին և ժպտացին։

—Բայց քո ուզած տիկնիկից չկար։ Ես մի ուրիշ ավելի լավ տիկնիկ եմ բերել քեզ համար։

Նա բացեց փաթեթն ու հանեց տիկնիկը։

Օ՜, ինչ տիկնիկ է, ինչքա՜ն գեղեցիկ։

Անահիտի աչքերն սկսեցին վառվել հուզմունքից, ե՞րբ պիտի մորաքույրը տա իր ձեռքը, որ ինքը գրկի։ Բայց նա շարունակում էր նայել տիկնիկի աչքերին ու չէր տալիս Անահիտին։

— Տեսնո՞ւմ եք, այս տիկնիկն ինչ սիրուն աչքեր ունի, նա գործ անել չի իմանում, բայց նայում է իր փոքրիկ տիրոջը և տեսնում, թե նա ինչպես է վարվում իր խաղալիքների հետ, ինչպե՞ս է պահում։ Եվ



Հենց որ բաց թողեց
Ձայնը ճղճղան,
Բոլոր հյուրերը
Լեղաճաք եղան։



Արքայադուստրը
Զայրույթը դեմքին
Հրաման տվեց.
— Այրե՛լ անպետքին։



Բայց Այծիկը մեր
Ծպտվեց արագ,
Պալատից ծլկեց՝
Իբրև խոհարար...

*(Շարունակելի)*

երբ իրեն դուր չի գալիս, նա թողնում է, սուս ու փուս հեռանում:

Մորաքույրը նայեց հատակին թափված խաղալիքներին ու շարունակեց.

— Գիտեմ, Անահիտ, դու այսպիսի տիկնիկ չես ուզում, ես սրան ետ կտանեմ:

Անահիտը բռնեց տիկնիկի ոտքերից:

— Ո՛չ, մորաքույր, թող մնա:

Մորաքույրը տիկնիկը տվեց երեխաներին, իսկ ինքը նստեց հանգստանալու:

Անահիտն ու Յոդիկը հերթով գրկեցին տիկնիկին: Տիկնիկը անթարթ աչքերով նայում էր նրանց:

— Արի առաջ սրանք հավաքենք, — փըսփըսաց Յոդիկը:

Նրանք միասին սկսեցին հավաքել խաղալիքները: Իսկ նոր տիկնիկը իր սիրուն աչքերով անվերջ նայում էր նրանց ու ժպտում:

# ՄԵՐ ԲԱԿԻ ԿԱՐԵՆԸ

ՌԱՅԻՍԱ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

Նկ. Ռ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ

Մեր բակում ո՞վ չի ճանաչում սևաչ Կարենին: Տղաներից ում էլ որ հարցնեք, ձեզ կասի. «Քաջ Կարենի՞ն, իհարկե, ճանաչում եմ»:

Եվ ահա մի օր ես ականատես եղա Կարենի քաջագործությանը: Աշխատանքից վերադառնալիս՝ բակում տեսա իրար հետ կռվող երկու տղայի: Երկուսն էլ աքաղաղների նման հարձակվում էին իրար վրա: Նրանցից մեկի շապիկի թևքը պատռված էր, քթից արյուն էր գալիս: Տուժողը մյուսից փոքր էր: Իսկ մեծը հենց ինքը Կարենն էր: Կռվարարների շուրջն էին խմբվել բակի մյուս երեխաները:

Հենց այն է, ուզում էի բաժանել կռվողներին, երբ բակ մտավ Կարենի հայրը: Առանց հարց ու փորձի նա բռնեց մյուս տղայի օձիքից, սկսեց հարվածել նրան և հետն էլ բղավել.

— Չհամարձակվես Կարենիս դիպչել, մյուս անգամ չփորձես նրան խփել: Հայրը չլսեց երեխաներին, որոնք վրդովված աղմկում էին.

— Քեռի, չէ՞ որ Կարենը հարձակվեց Վիգենի վրա: Նա Վիգենի մագնիսը խլեց:

— Քեռի, մեղավորը Կարենն է:

Բայց հայրիկը, առանց իր որդու «հակառակորդների» կողմը նայելու, գրկեց Կարենի ուսը, և նրանք գնացին տուն: Գնալիս Կարենը մի հաղթական հայացք գցեց երեխաների վրա: Չէ՞ որ նա հաղթել էր, կարևոր չէ, թե ինչ գնով:

Երեխաները մնացին բակում և սկսեցին քննարկել Կարենի արարքը:

Կարենը սովորում է 6-րդ «ա» դասարանում: Շատ բան ունի անելու մայրը, նրան դպրոց ուղարկելուց առաջ. պետք է կերակրել Կարենին, վզկապը արդուկել, կոշիկները մաքրել: Իսկ մի՞թե Կարենը չի կարող անել այդ ամենը: Կարող է, ինչու՞ չէ: Բայց մայրիկը ինքն է արել այդ գործերը, երբ դեռ Կարենը շատ փոքրիկ է եղել, և շարունակում է անել այժմ, երբ Կարենն արդեն 12 տարեկան է: Իսկ Կարենը չի պատկերացնում, թե ինչպե՞ս կարելի է, որ ինքը մաքրի իր կոշիկները, արդուկի վզկապը, վերնաշապիկը...այդ էր պակաս, աղջկա

Գործեր... Ա՜յ. ֆուտբոլ խաղալ. խնդրեմ, ուրախությամբ:

Կարենը շատ է սիրում ֆուտբոլ խաղալ: Խաղից հետո նա դպրոց է գալիս սովորաբար գզգզված, վերնաշապիկը անդրավարտիքից դուրս թռած, կոճակները պոկված, իսկ մոր փայլեցրած կոշիկները՝ ցեխոտված... Դե, ի՜նչ արած՝ ֆուտբոլ է...

Մի օր էլ Կարենը դպրոց մտավ շնչասպառ: Միջանցքում արդեն ոչ ոք չկար: Աշակերտները դասարանում սպասում էին ուսուցչուհուն: Վազեվազ մտնելով 6-րդ «ա» դասարան, Կարենը պայուսակը շպրտեց փորփրված նստարանին և սկսեց շտապ ուղղել վերնաշապիկը: Նրա կողքին նստած էր Լուսիկը՝ պիոներական ջոկատի նախագահը: Նա ուշադրություն չդարձրեց Կարենի գզգզված շորերին և շարունակեց գրել. հանկարծ կտրվեց նրա մատիտի ծայրը.

— Կարե՛ն,— դիմեց Լուսիկը,— մի րոպեով սրիչդ տուր:

— Հաճույքով կտայի. Լուսի՛կ, բայց տանն եմ թողել:

— Լա՛վ. ոչինչ. Գևորգից կխնդրեմ: Իսկ ինչպե՞ս ես լուծել հանրահաշվի խնդիրը:

— Գիտես, Լուսի՛կ, չարչարվեցի, չարչարվեցի, բայց չստացվեց. շատ դժվար խնդիր...



— Ի՞նչ ես ասում,— զարմացավ Լուսիկը,— շատ հեշտ խնդիր է: Տետրդ բեր, ես քեզ կբացատրեմ և դու դեռ կհասցնես լուծել:

Բայց Կարենը հրաժարվեց ընկերուհու օգնությունից:

Հանրահաշվի դասատու ընկեր Սուսաննան Կարենին կանչեց գրատախտակի մոտ: Լուսիկը մտահոգված էր տղայի վիճակով: Չէ՞ որ հավաքույթում ամբողջ դասարանով խոստացել էին ոչ մի «երկու» գնահատական չստանալ: Իսկ հիմա Կարենը...և Լուսիկն իր տետրում նշեց. «Օգնել Կարենին հանրահաշվից»:

Այդ ժամանակ նրա ականջին հասավ ուսուցչուհու ձայնը.

— Ճիշտ է լուծված, Կարե՛ն, միայն թե պետք է ավելի մաքուր և գեղեցիկ գրել: Քեզ «4» եմ նշանակում:

Կարենը հաղթական տեսքով նայեց Լուսիկին և տեղը նստելով ձեռքերի մեջ պտտացրեց սրիչը:

Զարմացած Լուսիկը նայեց սրիչին, ապա Կարենի աչքերին և միայն ասաց.

— Ա՛յ թե ինչպիսին ես՜դու:

Կարենի դեմքից ժպիտն անհայտացավ: Նա գլուխը կախեց և շփոթմունքը թաքցնելու համար, սկսեց ինչ-որ բան փնտրել պայուսակում:

Զանգը ազդարարեց դասի ավարտը: Երեխաներն ուրախ խմբով վազեցին դեպի միջանցք: Վերջինը դուրս վազեց Նունիկ Գուլակյանը և հանկարծ հասակով մեկ փռվեց դասարանի դռան առաջ: Ընկերուհիները մոտ վազեցին, բարձրացրին նրան և տարան բժշկուհու առանձնասենյակը:

Ընկերուհիների օգնությամբ Նունիկը մի կերպ հասավ տուն:

Իսկ 6-րդ «ա» դասարանում աղմուկը չէր դադարում:

— Որտեղի՞ց հայտնվեց այդ քարը: Չէ՞ որ սկզբում չկար,— հուզված հարցրեց թխադեմ Նվարդը,— տեսնես ո՞վ էր դրել...

— Ի՞նչ կասկածամիտն ես. ինչո՞ւ ես կարծում, որ դիտավորյալ է արված,— նկատեց Հռիփսիկը:

Հանցավորին այդպես էլ չգտան: Ոչ ոք գլխի չընկավ, որ դա Կարենի ձեռքի գործն էր: Նա ուզել էր կատակել: Հետո էլ ուզեց խոստովանել, բայց չհամարձակվեց, վախեցավ: Այդ օրը նա ֆուտբոլի էլ չգնաց: Կանչեցին, բայց հրաժարվեց ու գնաց տուն:

Երեկոյան Նունիկի մոտ եկան Լուսիկը, Թամարան և Սուրիկը: Եկան ոչ միայն նրան տեսնելու, այլ և հայտնելու, որ սրանից հետո՝ ամեն օր իրենցից մեկը կգա Նունիկի հետ դասերը պատրաստելու:

Ինչպիսի՜ ուրախությամբ փայլեցին Նունիկի աչքերը, երբ նա իրենց տանը տեսավ իր ընկերուհիներին: Ընկերների հոգատարությունը օգնեց նրան հեշտությամբ հասցնելու բաց թողած դասերը: Ինչպե՜ս նա սիրեց իր ընկերներին:

Երբ ապաքինված Նունիկը առաջին անգամ մըտավ դասարան, բոլորը ուրախ կանչերով դիմավորեցին նրան: Ո՛չ ոք չնկատեց, թե ինչպես Կարենը նրա նստարանին դրեց մի գեղեցիկ, կարմիր, ապակե գրիչ: Դրեց և նստեց իր տեղը: Այդ օրը մի քանի անգամ Կարենն անցավ Նունիկի կողքով, ուզեց խոստովանել, բայց չհամարձակվեց:

...Աշնանային մի կիրակի օր 6-րդ «ա» դասարանի աշակերտները դասղեկ Հովհաննիսյանի հետ գնացին «Հաղթանակ» զբոսայգին: Ի՜նչ լավ էր բնության ծոցում, շուրջը գույնզգույն ծաղիկներ, ոսկեսերև ծառեր, իսկ ներքևում փռվել էր հարազատ, վարդագույն Երևանը:

Զբոսանքից հետո բոլորը նստեցին ծառերի տակ, խոտերի վրա և սեղան բաց արեցին: Ամեն մեկը փորձում էր մյուսների նախաճաշի համը: Եվ այդպես, կարծես՝ ավելի համեղ էր թվում:

Միայն Կարենը չէր զգում ընկերների նախաճաշի համը: Նա բացել էր իր փաթեթը և մի կողմ քաշված՝ ուտում էր երշիկը, ձուն, խնձորը:

— Կարե՜ն, այ՛ Կարեն,— ձայն տվեց ընկեր Հովհաննիսյանը,— փորձիր այս կարկանդակը, ինքս եմ պատրաստել:

Կարենը հրաժարվեց, բայց դասղեկը կարկանդակը դրեց նրա ծնկին.

— Կեր, կե՛ր, համեղ է, ընկույզ կա մեջը, քեզ դուր կգա:

Ամոթից կարմրած Կարենը չգիտեր ինչ աներ, ինքը երբեք ոչ ոքի չէր հյուրասիրել, իսկ հիմա հյուրասիրում են իրեն: Ի՞նչ անել...

Կարենը ամաչելով նայում էր կարկանդակին, խաղողին, կոնֆետներին, որ իր առաջ դրել էին ընկերները և ուսուցչուհին...

Կամացուկ, այնպես որ ոչ ոք չնկատի, Կարենն իր փաթեթը դրեց ընդհանուր սեղանին:

ԱՎ. ԻՍԱՀԱԿՅԱՆ

# Կատակ

*(Տպագրվում է առաջին անգամ)*



*Պարոնն ղրկեց իրեն էշին,*
*Որ երթա արտը հնձի,*
*Նա էլ պառկեց արտի փեշին,*
*Թե՝ ինքը գա, թող հնձի:*

*Ապա ղրկեց գամփռ շանը,*
*Որ երթա էշին խածի,*
*Որ ելնի արտը հնձի,*
*Սա էլ պառկեց էշի կողքին,*
*Թե՝ ինքը գա, թող խածի:*

*Ապա ղրկեց չար կատուին,*
*Որ երթա շանը ճանկի,*
*Որ ելնի էշին խածի,*
*Որ ելնի արտը հնձի:*





*Նա էլ եկավ շանը ճանկեց,*
*Շունն եկավ էշին խածեց,*
*Էշն եկավ արտը հնձեց,*
*Պարոնն եկավ հունձը ճանկեց:*

Նկ. Ֆ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ



# ՔԵՌԻ ԿԱՐՈՆ

Մ. ՕՎՉԻՆՆԻԿՈՎ

Նկ. Պ. ՄԱԼԱՅԱՆԻ

Իմ մանկությունն անցել է հարավ-ուրալյան մի փոքրիկ քաղաքում: Այնտեղից ես վաղուց եմ հեռացել և, իրերի բերմամբ, եկել բնակություն հաստատել Հայաստանում։

Հիմա, երեսուն տարի անց, մանկությանս օրերի պատկերները ծանոթ հեքիաթի պես եմ հիշում. շատ դեպքեր մոռացել եմ, շատ դեմքեր աղոտ ստվերների նման են երևում...

Բայց մի դեմք, հեռու-հեռվից նախկին պայծառությամբ ինձ է նայում՝ իր սև, թախծոտ ու բարի աչքերով, մի դեմք, որ երբեք չի խամրի իմ մեջ...

Խոսքս քեռի Կարոյի մասին է և այն մասին, թե նա մի օր ինչ օյին խաղաց իմ գլխին և ինչպես դաս տվեց ժամանակից շուտ թռչել երազող «դեղնակտուցին»։

* * *

Մի օր հայրս տուն եկավ հոգնած ու անտրամադիր։ Նա ծանրումեծ նստեց ճնամաշ, ճռճռան աթոռին, ոլորեց փոքր ինչ ճերմակած բեղերը և դարձավ ինձ.

— Մոտ արի։

Մոտեցա։ Նա ինձ քաշեց ոտների արանքը։ Ծըխախոտի, օլիֆի ու ներկի հոտ էր գալիս վրայից։

— Վե՛րջ, ախպերս։ Աշխատանք չկա։ Մի քառակուսի մետր սպիտակեցնելը յոթ կոպեկ է։ Էլ չեմ դիմանա։ Ինձ ոտով-գլխով կուլ կտար։ Էնպես որ պիտի թողնես դպրոցը և գործի մտնես։

Սիրտս ուրախությունից թրթռաց, բայց ցույց չտվի, թե ուրախ եմ դրա համար։ Դպրոցն ինձ թվում էր դատարկ ու անպետք մի բան։ Օղակներով էինք պարապում. մեկը պատասխանում էր բոլորիս փոխարեն և գնահատական ստանում բոլորիս համար։ Դե այդտեղ էլ ի՞նչ ուսում։

— Որտե՞ղ գործ գտնեմ։

— Վաղը կգնաս մեխանիկական արհեստանոց։ Էնտեղ աշակերտներ են վերցնում։ Հարցնես, քեզ կտանեն։ Ես արդեն խոսել եմ էնտեղ,— նա կոշտացած ափով շոյեց իմ խուզած գլուխը և հառաչեց,— առայժմ սովորիր, իսկ երբ արդեն հմտանաս, միասին կգնանք Մագնիտկա։

Մագնիտկան իմ երազն էր։ Մեծերի խոսակցությունից ես գիտեի, որ մեզնից ոչ հեռու, ինչ-որ տեղ, Ատաչ ու Այդերլի սարերի ստորոտում կառուցվում է մի բանվորական քաղաք և մի գործարան, ուր մշակվելու էր հանքանյութը։ Տղաները պատմում էին, թե այդ հանքը գտել է մի նախրապան. իբրև թե նա լեռնալանջին կովեր է արածացնելիս եղել, հանկարծ կոշիկների ներբաններով պինդ կպել է գետնին ու պոկ չի եկել։ Խեղճը ըստիպված, ոտները դուրս է քաշել կոշիկներից ու բոբիկ վերադարձել տուն։ Ասում են, մինչ օրս էլ կոշիկներն այնտեղ են։ Մագնիտկա գնացողներն ըշ-

տապում են նախ և առաջ այդ կոշիկները տեսնել։ Ես էլ կուզենայի իմ աչքով տեսնել դրանք։

Հաջորդ օրը, երբ գնացի դպրոցից փաստաթղթերս վերցնելու, տղաները շրջապատեցին։ Ոմանք խղճում էին ինձ, ոմանք՝ նախանձում։

— Ուրեմն բոլորովի՞ն թողնում ես դպրոցը, հա՞,— հարցնում էին նրանք։

— Չգիտեմ։ Հետո կպարզվի։ Առայժմ չապես,— մեծավարի պատասխանում էի ես։— Առաջին հրնգամյակն է։ Բոլորս էլ պիտի աշխատենք։

— Դու ո՞նց պիտի կառուցես հնգամյակը,— կըկոցելով դեղին, խորամանկ աչքերը հարցրեց Վասկա Մարտինովը, որին «Մաղարիչ» էինք ասում,— հրնգամյակը կառուցում են Դնեպրոգէսում, Մագնիտկայում, այլ ոչ թե այստեղ։

— Իսկ մեր ընտանիքը տեղափոխվում է Մագնիտկա։

— Հը՞մ, էդ ուրիշ բան է,— հիասթափված ծոր տվեց նա և ատամների արանքից թքեց։— Հավանաբար մենք էլ կգնանք այստեղից։

* * *

Մեխանիկական արհեստանոցում ինձ ընդունեցին։ Դա մի երկար սրահ էր, ուր առավոտից իրիկուն շրխկ ու թրխկ էր, կրճտոց ու զրնգոց։ Սկզբում գործս թեթև էր։ Երբ մի քիչ առաջ գնացի, ինձ ուրիշ գործ տվեցին՝ թիթեղից կտրում էի օղակներ և զանազան չափերի շերտեր։ Երբ մուրճը խփում էի, երկաթը դղրդում էր, հատիչը ետ էր թռչում, չէր կտրում ու մեկ էլ, ու՜ֆ-ֆ, մատներիս էր իջնում մուրճի հարվածը։ Վարպետս, որ հետևում էր ինձ, ժպտում էր բեղերի տակից.

— Հը՛, տղաս, կծու՞մ է։ Իսկ դու հատիչի՛ն խփիր, հատիչի՛ն, ոչ թե մատներին։

Ատամներս սեղմած, որ ցավից վատ խոսք դուրս չտամ, շարունակում էի խփել մերթ հատիչին, մերթ մատներիս։

Ինչ ուզում ես ասա, դժվար էր։

* * *

Ամեն օր անցնում էի վարսավիրանոցի մոտով, որը մեզնից այնքան էլ հեռու չէր։

Փոքրիկ, ապակեպատ դռնով հաճախորդները ընկնում էին հենց ճռճռան հատակով մի անշուք սենյակ։ Բացի վարսավիրի սարքուսարքից, կար մի սեղան, վրան թերթեր ու ամսագրեր և մի քանի աթոռակ։

Վարսավիրը, որին բոլորս քեռի Կարո էինք կանչում, միջահասակ, լիքը դեմքով, թախծոտ աչքերով մի կովկասցի մարդ էր։ Թե ինչպես էր նա իր հեռավոր հայրենիքից մեզ մոտ եկել՝ չգիտեի։ Գիտեի միայն, որ մինչ ռևոլյուցիան մեր խուլ ու փոքրիկ քաղաքն էին աքսորել «քաղաքականներին»։

Քեռի Կարոյին մենք չէինք համարում օտարական։ Նա այնպես էր մերվել տեղացիներին, որ եթե կովկասցու արտաքինը չլիներ, նրան իսկական տեղացի կհամարեին։

Ես երբեք մազերս չէի խուզում քեռի Կարոյի մոտ։ Մեր մազերը հայրս էր խուզում։ Քեռի Կարոյի մոտ մազ խուզելը իմ վաղեմի երազն էր։

Այժմ, երբ ես արդեն աշխատում էի, երբ կարող էի սեփական դրամ ունենալ, մտածեցի թույլ տալ այսպիսի մի շռայլություն. սափրվել քեռի Կարոյի մոտ։ Դե, չէ՞ որ ես ինձ հասունացած էի զգում։ Հաճախ շոշափում էի վերին շրթունքիս ու ծնոտիս աղվամազը և մտածում, որ արդեն սափրվելու ժամանակն է։ Ես անհամբեր սպասում էի առաջին աշխատավարձիս։

Վերջապես եկավ այդ օրը։ Շաբաթ էր։ Ստանալով իմ ութ ռուբլի քառասուներեք կոպեկը, ուրախ-ուրախ դուրս եկա արհեստանոցի գրասենյակից։ Ճանապարհին, սրտի թրթիռով բացեցի վարսավիրանոցի դուռը, մտա ու բարևեցի։ Քեռի Կարոն, շարունակելով իր աշխատանքը, սիրալիր



պատասխանեց ինձ։ Ես հերթ պահեցի։ Վարսավիրանոցում լուռ էր, ինչպես բուժարանում է լինում, խոսում էին կիսաձայն, լսվում էր թերթվող ամսագրերի շրշյունը, քեռի Կարոյի մկրատի չխչխկոցը։

Երբ հերթը ինձ հասավ, քեռի Կարոն սրբիչը խոնարհվելով ցույց տվեց պարապ բազկաթոռը։

— Խնդրեմ։

Մի կողմ դնելով «Պրոժեկտոր» ամսագիրը, ես մոտեցա և նստեցի բազկաթոռին։ Քեռի Կարոն խոնարհվեց վրաս։

— Հը՞։

Ես շոշափեցի ծնոտիս ու վերին շրթունքիս աղվամազը և որքան հնարավոր է լրջորեն ասացի.

— Սափրվում եմ։

— Խնդրե՛մ,— խոնարհ ու պատրաստակամ արտասանեց քեռի Կարոն,— ապա դարձավ դեպի սենյակի խորքը և ձայն տվեց.

— Սուսա՛ննա, տաք ջուր բեր։

Ես լուռ սպասում էի։ Քեռի Կարոն մերթ ինձ էր նայում, մերթ ձեռքի սապնամանին, որի մեջ փրփուր էր շինում։ Նրա աչքերը ժպտում էին։



— Ուրեմն սափրվում ես, էլի...

— Հա՛,— հառաչելով ասացի ես,— ժամանակն է...

— Ուսումդ վերջացրե՞լ ես։

— Ինչ արած, ընտանիք ունենք։ Մի քառակուսի մետր ապակեպատելը յոթ կոպեկ է։ Գործ չկա։ Հորս օգնող է պետք։

— Գովելի է, երիտասարդ, գովելի է,— սապնելով ծնոտս, այտերս, կրկնում էր քեռի Կարոն,— որդին ընտանիքում հոր աջ թևն է։ Ապրե՛ս։ Սեղմիր շրթունքներդ։

Նա եռանդով ու երկար սապնում էր ինձ։ Երբ իմ երեսի ճերմակ փրփուրից մորուք առաջացավ, քեռի Կարոն վար դրեց վրձինը, ձեռքերը սրբեց, գնաց նստեց սեղանի մոտ, բացեց ամսագիրը և սկսեց կարդալ։ Հայելու մեջ ես տեսնում էի, թե ինչպես հաճախորդները լուռ իրար են նայում և հետաքրքրությամբ սպասում։ Ես չէի հասկանում, թե ինչու քեռի Կարոն փոխանակ սափրելու՝ նստել կարդում է։ Հազացի, հիշեցնելով, որ ես այստեղ եմ։ Բայց քեռի Կարոն ասես թե չէր էլ լսում իմ ձայնը։

Վերջապես չհամբերեցի ու ձայն տվի.

— Քեռի՛ Կարո։

Նա մի կողմ դնելով ամսագիրը, արագ մոտեցավ ինձ։

— Ի՞նչ կհրամայեք։

— Բա ե՞րբ եք սափրելու,— զսպելով իմ անհամբերությունը հարցրի ես։

Նա ժպտալով դրկեց ուսերս և գորովանքով պատասխանեց.

— Երբ որ բուսնեն մազերդ։

Մի պահ լռություն տիրեց, և ապա վարսավիրանոցը թնդաց առնական քրքիջից։ Ծիծաղում էին բոլորը, մանավանդ լոլոզ հրդեհաշեջ Դոլովինը։ Նա փորը բռնած երկտակ էր եղել։ Թվում էր, թե ինձ վրա են ծիծաղում նույնիսկ վարսավիրանոցի իրերը, նույնիսկ լուսամուտի ճանճերը։

— Երբ որ բուսնեն... հա՛-հա՛-հա՛-հա՜, համա թե մոգոնեց հա՜...— հռհռում էր հրդեհաշեջը։

Միայն քեռի Կարոն էր անտարբեր, անվրդով։ Ճերմակ անձեռոցիկով նա սրբեց երեսիս փրփուրը, քնքշորեն թփթփացրեց այտերս։

— Մի՛ բարկանա, տղա՛ս։ Ժամանակը կգա, բեղ ու մորուքդ կբուսնեն և դու ծիծաղելով կհիշես, թե ինչպես առաջին անգամ սափրվելու եկար։ Կհիշես և ինձ, քո բարեկամին, քեռի Կարոյին... Գուցե գլուխդ խուզենք, հը՞։

— Չէ՛, պետք չի։

Ես գնդակի պես դուրս թռա վարսավիրանոցից, առանց շուրջս նայելու։ Դե, ես հիմա կորած եմ։ Մեծերը տանը իրենց երեխաներին կպատմեն, իսկ սրանք էլ իրենց ընկերներին և լուրը կգա կհասնի մեր թաղը։ Սակայն տարօրինակ բան, ես քեռի Կարոյից նեղացած չէի։

Քեռի Կարո, քեռի Կարո։ Որտե՞ղ ես դու հիմա։

* * *

Այդ դեպքից շատ տարիներ անց, այլ քաղաքում, դա ինձ պատմեցին իբրև անեկդոտ։ Չգիտեմ, գուցե քեռի Կարոն գիտեր այդպիսի մի անեկդոտ ու դրա նման մի բան սարքեց և իմ գլխին։ Գուցե։

Բայց կարևորը դա չէ, այլ քեռի Կարոն, սիրալիր, բարի քեռի Կարոն, որ սիրում էր իր գործը, սիրում էր մարդկանց, նրանց թարմացնում, ջահելացնում էր, մարդկանց, որոնք դուրս գալով նրա վարսավիրանոցից, իրենց զգում էին ավելի գեղեցկացած, ավելի լավ ու բարեհոգի դարձած։

Թարգմ. Հ. Հարությունյան

# ԾՈՒՅԼԻ ՇԱԲԱԹԸ



ՄԱՐԿ ԳԻՏԼՅԱՐՍԿԻ



Ծանր օր է երկուշաբթին.
Արթնանում եմ տխուր—տրտում.
Ասես թե քար կա իմ մեջքին,
Հազիվ տեղից վեր եմ կենում:
Հինգ դաս ունենք... Ա՜յ քեզ տանջանք,
Չեն էլ թողնի մի քիչ խաղանք:

Երեքշաբթի հիվանդ եմ, թույլ,
Հորանջում եմ ես անընդհատ.
Ա՜խ, չէր լինի մարդ այդքան ծույլ,
Թե որ վաղը լիներ շաբաթ.
Հարյուր անգամ ես մի օրում
Կիրակին եմ միտս բերում:



Չորեքշաբթի ես ու՞ր փախչեմ,
Գլուխն է իմ սաստիկ ցավում,
Այդ օրը ինձ որքան տանջեմ,
Ոչ մի խնդիր չի վճռվում.
Դպրոց գնալ չեմ էլ ուզում,
«Երկուսներն» են ինձ սպասում:

Հինգշաբթի օրն հենց որ եկավ,
Ես երեք ժամ պիտի պառկեմ,
Ֆիզկուլտ դասի համար մի լավ
Թևերիս մեջ ուժ հավաքեմ,
Որ գոնե մի «հինգ» ստանամ
Ու մայրիկիս տանեմ ցույց տամ:

Ուրբա՜թ, ուրբա՜թ, ա՜յ, այդ օրը
Ճիշտն ասած՝ ինձ դուր է գալիս.
Թեև գիտեմ՝ թույրն ու մույրը
Նորից պիտի թափվեն գլխիս:
Բայց ես շատ եմ ուրախանում,
Շաբաթվա վերջն է մոտենում:

Շաբաթ օրը դե իմ հատուկ
Աշխատանքի օրն է արդեն.
Ախորժակով ես լավ ուտում,
Վազվզում եմ միշտ դես ու դեն.
Դպրոց էլ դեռ կգնայի,
Բայց... ֆուտբոլի խաղն ո՞վ նայի...




Իսկ կիրակին օրերի մեջ
Ամենալավ օրն է անշուշտ,
Ժամը տասից երեքը ես
Քեֆիս համար խաղում եմ կուշտ.
Իսկ երեքից մինչև տասը
Փնտրում ու չեմ գտնում դասը:



Ութերորդ օր չկա ափսոս,
Ու՞ր էր, եթե ունենայի,
Ամբողջ օրը նստած անխոս,
Գիտե՞ք ինչքան գործ կանեի...
Կհնարեմ այդ օրն խսկույն,
Թե որ չանեմ ես ծուլություն:

Նկ. Ռ. ՀՈՎԻՎՅԱՆԻ

Թարգմ. Ս. ՄԿՐՏՉՅԱՆ



ԱՍԼԱՆՅԱՆ ԱՐԱՔՍՅԱՅԻ գեղեցիկ շարժումներով հիացած է մարզիչ, սպորտի վարպետ Լ. ԶԱՔԱՐՅԱՆԸ

Մարզիչ, սպորտի վարպետ Գ. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆԸ նույնպես գոհ է շնորհալի սան ՀԱՄԼԵՏ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻՑ (էջ 28)

Լուսանկարները՝ Ա. ՀԵՔԵԹՅԱՆԻ

# ՊԱՏԱՆԻ ՄԱՐՄՆԱՄԱՐԶԻԿՆԵՐԻ ՄՈՏ

Վ. ԵՐԿԱՆՅԱՆ

Ձեզանից ո՞վ ներկա չի եղել մարմնամարզական մրցումների, ո՞վ չի տեսել, թե ինչպիսի գեղեցիկ ու հիանալի վարժություններ են կատարում մարմնամարզիկները: Շատերդ հավանաբար ականատես եք եղել նաև անվանի սպորտսմեններ Ալբերտ Ազարյանի, Հրանտ Շահինյանի, Ալբերտ Ազնաուրյանի և մյուսների փայլուն ելույթներին: Չէ՞ որ այդ սպորտսմենները հայտնի են ոչ միայն Հայաստանում, այլև մեր մեծ Միության ու աշխարհի ամենատարբեր ծայրերում: Եվ ինչպե՞ս կարելի է դիտել նրանց հղկված, սլացիկ ու ազատ շարժումները և չհիանալ ու չնախանձել նրանց, այո՛, չնախանձել: Ալբերտ Ազարյանին շատ անգամ են ծափահարել աշխարհի բազմաթիվ մայրաքաղաքների հմայված սպորտասերները, նախանձել նրա ուժեղ ու բրոնզաձույլ մարմնի ճկուն շարժումներին:

Բայց չէ՞ որ տարիներն անցնում էն, և հայկական մարմնամարզության ականավոր ներկայացուցիչներին փոխարինողներ են հարկավոր, որոնք կարողանան շարունակել նրանց փառավոր ուղին:

Այս հարցը ամենից շատ մտահոգում էր աշխարհի նախկին չեմպիոն, սպորտի վաստակավոր վարպետ Հրանտ Շահինյանին: Եվ նրա առաջարկով, Երևանում, Ֆիզկուլտուրնիկի կենտրոնական տանը բացվեց մանկական մարմնամարզության դպրոց: Այնտեղ ընդունվել ցանկացողները անչափ շատ էին, սակայն փորձառու մասնագետները ընտրեցին 9—10 տարեկան 80 տղա և աղջիկ: Հրանտ Շահինյանի ղեկավարությամբ սպորտի վարպետներ Ազնիվ Գրիգորյանը, Լեոնիդ Զաքարյանը, Գուրգեն Մնացականյանը և մարզիչ Գրիգոր Մարտիրոսյանը սկսեցին պարապել երեխաների հետ:

Դա մեկ տարի առաջ էր...:

Այժմ մարմնամարզության դպրոցի փոքրիկ սաների մասին շատերը գիտեն: Հակոբը, Կարենը, Նուբարիսը, Ռազմիկը, Ալիկը, Կարինեն և շատ ու շատ ուրիշներ բավական գեղեցիկ վարժություններ են անում պտտաձողի, օղակների, զուգափայտերի վրա, ազատ ու վարժ կատարում են ակրոբատիկական համարներ:

Փոքրիկ մարմնամարզիկներին միշտ օրինակ է ծառայում իրենց սիրելի ուսուցիչը՝ Հրանտ Շահինյանը, որի փորձառու աչքից ոչ մի թերություն չի վրիպում: Չէ՞ որ նա ինքն էլ է մի ժամանակ այդպես սկսել իր սպորտային ուղին: Դեռ ավելին, նա վտիտ ու հիվանդոտ տղա էր, որին սկզբում թողել էին միայն բուժական մարմնամարզությամբ պարապել: Հրանտի առաջին մարզիչը, այժմ արդեն ծերունազարդ Հարություն Գարգալոյանը, շատ օգնեց նրան, սովորեցրեց լինել համառ ու հետևողական, երբեք չվախենալ դժվարություններից: Ուշիմ ու կարգապահ Հրանտը հետևեց իր ուսուցչի խորհուրդներին: 1939 թվականին երբեմնի վտիտ տղան, որի վրա շատերը ուշադրություն էլ չէին դարձնում, նվաճեց Սովետական Միության պատանիների մարմնամարզության չեմպիոնի կոչումը: Եվ մի՞թե համառությունն ու համառատակամությունը չէին, որ օգնեցին Հայրենական պատերազմում ծանր վիրավորված լեյտենանտ Հրանտ Շահինյանին՝ կրկին կանգնելու սովետական մարմնամարզիկների առաջին շարքերում: Վիրավոր լեյտենանտը համառորեն մարզվեց, կատարելագործեց իր վարպետությունը և 1946 թվականին դարձավ Սովետական Միության չեմպիոն: Իսկ հետո՞... հետո Պրագայի, Բուդապեշտի, Փարիզի, Հելսինկիի, Հռոմի դահլիճներում անվանի մարմնամարզիկը ստիպեց նվագախմբերին կատարելու Սովետական Միության Հիմնը ի պատիվ իր ձեռք բերած հաղթանակների ու ոսկե մեդալների:

Այո՛, համառությունն ու համ-

տատակամությունը շատ անգամ են հրաշքներ գործել։ Այդ բանը լավ գիտի Հրանտ Շահինյանը, և նա առաջին հերթին իր սաներին այդ է սովորեցնում։ Ծույլ, անկարգապահ աշակերտը տեղ չունի սպորտում, ով վատ է սովորում հանրակրթական դպրոցում, մարզիչը նրա հետ առանձին է խոսում։ Նույնիսկ «3» գնահատականը փրկություն չէ։ Եվ այժմ սպորտ-դպրոցի բոլոր սաները լավ են սովորում։ Ա՛յ, օրինակ՝ Գևորգ Ժամագործյանը։ Երբ նա նոր էր սկսել հաճախել մարմնամարզության դպրոց, բոլորից հետ էր մնում, լավ չէին գործերը նաև հանրակրթական դպրոցում։ Բայց պահանջկոտ ու հոգատար մարզիչները սովորեցրին նրան հաղթահարել դժվարությունները, և այժմ Գևորգը կարմրելու ոչ մի առիթ չունի։

Իսկ մի՞թե համառորեն չի պարապում 9 տարեկան Սամվելիկը։ Նա լավ է սովորում և՛ այստեղ, և՛ դպրոցում։



Սակայն Սամվելիկը միաժամանակ և քանդակագործ է։ Նա մասնակցել է Վիեննայի, Բրյուսելի համաշխարհային և համամիութենական ցուցահանդեսներին։ Համառ է Սամվելիկը, այդ բանը նրան մարզիչներն են սովորեցրել։ Քանդակագո՞րծ կդառնա նա, թե՞ մարմնամարզիկ։ Գուցե երկուսը միասին։ Համառությունը շատ բան է անում։ Գուցե հենց Վիեննայում կամ Բրյուսելում մի քանի տարի անց՝ սպորտասերները կդիտեն նաև մարմնամարզիկ Սամվել Ղազարյանի ելույթը։

Շատերը կան սպորտդպրոցում Սամվելիկի ու Գևորգի նման։ Նրանց ապագան պարզ է. նրանք կդառնան լավ սպորտսմեններ և լավ քաղաքացիներ։




**Բաժինը վարում է պրոֆեսոր ԳԻՏՈՒՆՅԱՆԸ**

## ՀՐԱՇԱԳՈՐԾ ԲՈՒՅՍԸ

Շատ հին ժամանակներում ապրում էր մի գյուղացի, անունը՝ Վան Լի։ Ծակ տանիքով խարխուլ խրճիթ, մի պառաված գոմեշ, կոշտուկապատ ձեռքեր և ազնիվ ու բարի սիրտ. ահա այդ աղքատ մարդու ամբողջ հարստությունը։ Վան Լին ուներ իննսունինը հարևան. իննսունութը իր նման աղքատ գյուղացիներ էին, իսկ մեկը շատ հարուստ էր, կալվածատեր։ Եթե հարևաններից մեկի գոմեշը ավելի ուժեղ էր լինում, հարուստը գոռում էր. «Գոմեշն իմն է»։ Եթե մեկն ու մեկը նոր խրճիթ էր սարքում, հարուստը կանգնում էր շեմքին և ասում. «Խրճիթը իմն է»։ Եթե ուրիշի այգում հասնում էր խնձորը, հարուստը դարձյալ հանգիստ չէր մնում և ասում էր. «Խնձորը իմն է»։

Երևում էր, որ իզուր չէին այդ կալվածատիրոջը Վո ասում, որը նշանակում է՝ իմն է։ Գյուղացիները նրան ասում էին նաև Հին Գայլ։

Այսպես միասին ապրում էին հարյուր հարևան։ Չքավորները աշխատում էին, իսկ կալվածատերը մեջքի վրա պառկում ու վայելում էր նրանց արդար վաստակը։

Մի անգամ Վան Լին գնաց

անտառ հատապտուղ հավաքելու։ Քայլում ու տխուր երգում էր իր համար (պարզ է, որ սոված մարդը ուրախ երգ չէր երգի)։ Եվ հանկարծ ճանապարհի վրա նա մի պարկ տեսավ։ Վան Լին կռացավ և ուզեց բաց անել պարկը, բայց փոշմանեց. «Գուցե հարևաններիցս մեկն ու մեկը կորցրած լինի, գնամ հարցնեմ»։ Պարկը գցեց ուսին և քայլեց դեպի գյուղ։

Վան Լին խրճիթից խրճիթ էր անցնում և հարևաններին հարցնում էր, թե ով է կորցրել պարկը։

— Ո՛չ, չենք կորցրել,— պատասխանում էին հարևանները։

Վան Լին բոլոր չքավորների մոտ եղավ, բայց պարկի տերը



չգտնվեց։ Ի վերջո Վան Լին կանգ առավ կալվածատիրոջ տան առաջ։ Նոր էր բերանը բաց արել, երբ Հին Գայլ Վոն վրա պրծավ, խլեց պարկը, շոշափեց բոլոր կողմերից և գոռաց. «Իմ պարկն է։ Մարգարիտի հատիկներ կան մեջը»։ Վան Լինի գնալուց հետո կալվածատերը բաց արեց պարկը ու կատաղությունից կապտեց. պարկի մեջ ոչ թե մարգարտահատիկներ էին լցված, այլ ինչ-որ անծանոթ հատիկներ։

Վոն ուզեց թափել անծանոթ հատիկները, բայց ագահությունը հաղթեց։ Հին Գայլը սկսեց մտածել, թե ինչ կերպ օգուտ ունենա այդ հատիկներից։ Եվ նրա գլխում մի միտք ծագեց. «Գյուղացիները ինձանից պարտքով բրինձ կխնդրեն, որ ցանեն. ես էլ նրանց կխաբեմ ու այս հատիկները կտամ։ Կասեմ, թե սրանք սովորական հատիկներ չեն, այլ մարգարտահատիկներ են։ Թող տանեն ցանեն ու հետո սովից



սատկեն»։

Ինչպես մտածեց, այնպես էլ արեց։ Վոն հատիկները բաժանեց գյուղացիներին և նստեց դռան շեմին։

Նստել ու սպասում էր, թե երբ պիտի ուրիշների դժբախտության վրա ուրախանա։ Հին Գայլը երկար սպասեց ուրիշների դժբախտությանը և հոգնեց։ Վերջապես նրա ականջին գյուղից եկող ձայներ հասան։ «Ուխա՜յ,— ուրախացավ Վոն,— դժբախտությունը եկել է արդեն։ Ծիծաղելու իսկական ժամանակն է»։

Եվ Հին Գայլ Վոն վազեց դե-



պի գյուղ։ Բայց իզուր էր նա շտապում։ Քանի նա ուրիշների դժբախտությանն էր սպասում, գյուղացիների արտերում վեր էին ձգվում կանաչ ծիլերը, որոնք բարձրացան, բարձրացան ու կարգին բույսեր դարձան։ Ցողունները երկար էին, տերևները՝ լայնարձակ, և յուրաքանչյուրի վրա այնքան հատիկ կար, որքան առաջ հավաքում էին ամբողջ արտից։

Ուրախացել էին գյուղացիները. երբեք նրանք այդքան երջանիկ չէին զգացել իրենց։ Բերքը շատ էր, հիմա կուշտ կուտեին։

Հին Գայլ Վոն նոր միայն գլխի ընկավ, թե ինչպիսի հարստություն է իր ձեռքից թռել։ Արտից-արտ էր անցնում և ամբողջ ուժով գոռում. «Ի՛մն է, ի՛մը, ի՛մը»։ Բայց նա երկար չտանջվեց. ագահ հարուստի սիրտը չդիմացավ։ Նա ընկավ գետ-



նին ու փչեց վերջին շունչը։ Ո՛չ ոք չափսոսաց, որովհետև Վոն ապրում էր գայլի պես և գայլի պես էլ պիտի սատկեր։



Իսկ այդ հատիկները իրոք որ մարգարտահատիկներ դուրս եկան։ Այդ օրվանից Չինաստանում եգիպտացորենին ասում են «Իյյու—շո - շու», որ նշանակում է «մարգարիտի հատիկներ»։

Մի խոսքով, եգիպտացորենը այդպիսի զարմանալի անուն է կրում իր զարմանալի հատկությունների շնորհիվ։

Իսկ ի՞նչ հատկություններ են դրանք։

Երբևէ դու լսե՞լ ես ցորենի անտառ։ Դժվար թե։ Բայց այ, եգիպտացորենի անտառներ, իրոք գոյություն ունեն։ Եգիպտացորենի ցողունները հասնում են մինչև ինը մետր բարձրության։ Այդպիսի «անտառներ» աճում են արևմտյան Մեքսիկայի դաշտերում։

Ճիշտ է, ուրիշ տեղերում եգիպտացորենը հասակով զիջում է իր մեքսիկական ազգականներին, բայց գանան եգիպտացորենն անգամ հսկա է թվում մնացած հատիկատու բույսերի մոտ։ Եգիպտացորենի միջին բարձրությունը երկուսից-երեք մետր է։ Եվ նա այդպիսի բարձրության է հասնում ընդամենը երեք-չորս ամսվա ընթացքում։

Բայց եգիպտացորենը ոչ միայն իր բարձր հասակով է անմրցակից։ Նա չեմպիոն է նաև ծանրության բարձրացման գծով։ Գուցե տարօրինակ են հնչում այս տողերը, բայց զարմանալու ոչինչ չկա։

Եթե ցանես ցորենի հիսուն հատիկ, ապա ամենաբարենպաստ պայմանների դեպքում, աշնանը կարող ես ստանալ հազար հատիկ, այսինքն՝ 20 անգամ շատ. այդպես են որոշում ցորենի բերքատվությունը։ Իսկ եթե ցանես ընտիր եգիպտացորենի հիսուն հատիկ և լավ մշակես, ապա հարյուր անգամ շատ բերք կստանաս։ Մեկ հատիկից կստանաս հարյուր հատիկ, տասը կիլոգրամ սերմից՝ մեկ տոննա բերք։ Այժմ հասկացա՞ր, թե ինչու եգիպտացորենին համարեցինք ծանրության գծով անմրցակից չեմպիոն։

Բայց եգիպտացորենը ոչ միայն չեմպիոն է, կանաչ դյուցազն, այլև մարդու կանաչ բարեկամը։

Մարդը շատ կանաչ բարեկամներ ունի։ Ոմանք մարդուն են կեր տալիս, ուրիշները նրա թեվավոր ու չորքոտանի օգնականներին, երրորդները՝ հագցնում են մարդուն, չորրորդները՝ զարդարում նրա բնակարանը։ Դրանից ելնելով էլ մարդու կանաչ բարեկամները բաժանվում են պարենային, անասնակերային, տեխնիկական և դեկորատիվ խմբերի։




Եգիպտացորենը չի կարելի դասել այդ խմբերից որևէ մեկում, որովհետև նա ունի բոլոր խմբերին վերաբերող հատկությունները։ Եգիպտացորենի հատիկներից պատրաստում են բազմատեսակ օգտակար սննդամթերքներ։ Կողրերն ու կանաչ մասսայից պատրաստած սիլոսը ամենալավ անասնակերն է։ Իսկ ինչ վերաբերվում է եգիպտացորենի տեխնիկական օգտագործմանը, ապա պետք է իմանալ, որ նրանից պատրաստում են բազմատեսակ օգտակար նյութեր, արհեստական մետաքս, թուղթ, ներկեր, օճառ և այլն։

Երբ խոսք է բացվում եգիպտացորենի մասին, հավանական է, դու պատկերացնում ես բարձր ցողունով, լայն-լայն տերևներով և դեղին հատիկներով մի բույս։ Դա եգիպտացորենի ամենատարածված տեսակն է։ Բայց դժվար թե իմանաս, որ եգիպտացորենի հատիկները լինում են նաև սպիտակ, կապույտ, նարնջագույն և նույնիսկ խայտաբղետ։ Իսկ ամերիկյան անվանի սելեկցիոներ Լյութեր Բերբանկը ստացել է եգիպտացորենի նոր տեսակ, որի տերևների վրա միմյանց են հաջորդում դեղին, մուգ-կարմիր, սպիտակ, կանաչ, բրոնզագույն ու շագանակագույն շերտերը և ծիածանաձև զարդարում դաշտերը։ Այդ տեսակը նա կոչել է «Ծիածան»։ Բայց եգիպտացորենի սերմերը ինքնուրույն չեն տարածվում։ Կանոնավոր



անման ու զարգացման համար պետք է մեծ խոնավություն, արևի ջերմություն, սնունդ։ Այն պետք է պահպանել թռչուններից, անասուններից, մոլախոտերից։

Այս հպարտ գեղեցկուհու գաղտնիքներից մեկն էլ այն է, որ վայրի եգիպտացորեն բնության մեջ գոյություն չունի։ Նրա գոյությունը պայմանավորված է մարդու հրաշագործ աշխատանքով ու խնամքով։



## ՀԱՐՑՐԵ՛Ք — կպատասխանենք

Հարգելի խմբագրություն. ի՞նչ բան է երազը և ինչպե՞ս է պատահում, որ մարդ երազ է տեսնում։ Խնդրում եմ պատասխանել ամսագրի միջոցով։

*ՍՏԵՓԱՆՅԱՆ ԶԱՎԵՆ*

*(Սիսիանի շրջան, Շաքի գյուղի միջնակարգ դպրոցի աշակերտ)*



# Ինչո՞ւ է մարդը երազ տեսնում

Մեր գիտակցության օրգանը գլխուղեղի մեծ կիսագնդերի կեղևն է։ Քնած ժամանակ, երբ գիտակցությունը դադարում է գործելուց, պայմաններ են ստեղծվում մի այնպիսի հոգեկան երևույթի համար, որը կոչվում է երազ։

Որո՞նք են այդ պայմանները։ Ահա դրանցից ամենահիմնականները։

1. Քնած ժամանակ հաճախ իրական տպավորություններն աղավաղվում են, աղճատվում և ֆանտաստիկ ու պատրանքային ըմբռնումների բնույթ ստանում, որովհետև չկա այդ տպավորությունները ճիշտ ընդունող, ստուգող և գնահատող գիտակցությունը։ Քնած մարդու մոտ հասարակ թխկոցը կարող է ըմբռնվել որպես թնդանոթի ձայն և համապատասխան երազ առաջացնել։ Քնած մարդու ոտքերին մոտեցրած տաք թեյով լի բաժակը կարող է ահագին ջերմության տպավորություն ստեղծել, իսկ այրվող կոճի թելի թույլ հոտը բազմապատկվել ու հազարապատկվել։

2. Այդ արտաքին թույլ գրգիռները, որոնք այդպիսի ուռճացած բնույթ են ստացել, հաճախ արթնացնում են մեկը մյուսի հետ ոչ մի կապ չունեցող հուշեր և արագ, ամենատարօրինակ կերպով կապակցվելով, որոշակի բովանդակություն ունեցող երազներ առաջացնում։ Այդպիսի երազը թողնում է մի այնպիսի կինո էկրանի տպավորություն, որտեղ իրար են միանում, ասենք թե տեսած կինոներից, կարդացած գրքերից, ուրիշի պատմածից ու մարդու հետ պատահած միջադեպերից առանձին տպավորություններ ու տեսարաններ։ Եվ քանի որ քնած ժամանակ առանձին հուշեր շատ արագ են վերարտադրվում ու չքանում, դրա համար էլ, արթնանալիս շատ դժվար է լինում հասկանալ սեփական երազի բովանդակության պատճառները։

3. Երազի բնույթի վրա մեծ ազդեցություն ունի երազ տեսնողի հոգեվիճակն արթուն ժամանակ։ Օրինակ՝ հետաքրքիր ճանապարհորդության նախօրյակին առաջացած երազները մեծ չափով կապված են այդ ճանապարհորդությանը վերաբերող իրադարձություն-



ների հետ: Քննությունների նախօրյակին, հարազատների հիվանդության դեպքում երազները բոլորովին յուրահատուկ բնույթ են կրում:

4. Երազները կարող են առաջանալ նաև ներքին, օրգանական բնույթ կրող գրգիռներից: Հայտնի է, որ քաղցած մարդը երազում ուտելիք է տեսնում, իսկ ծարավ մարդը՝ ջուր: Քիչ նշանակություն չունի նաև մարմնի դիրքը քնած ժամանակ:

Այսպիսով, չնայած շատ երազների չափազանց ֆանտաստիկ բընույթին, նրանք այնուամենայնիվ պայմանավորված են մեր կյանքի հետ կապված իրական հանգամանքներով և փանազան ժամանակներում ստացած տպավորություններով:

*Մ. ՄԱԶՄԱՆՅԱՆ*

*(Երևանի Խ. Աբովյանի անվան Մանկավարժական ինստիտուտի հոգեբանության ամբիոնի վարիչ, դոցենտ)*







ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝ Նկ. ԳՐ. ԽԱՆՋՅԱՆԻ*

Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝** ԱՍՍՏՐՅԱՆ Օ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գլխավոր խմբագրի տեղակալ), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՖՅԱՆ Պ., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՕՀԱՆՅԱՆ Ա.:

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 4.
Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—39—06:

ՎՖ 04391. Պատվեր 331: Տպաքանակ 6700: Տպագրական 4,3 մամուլ: Ստորագրված է տպագրության 12/VI 1959 թ. ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան 91:

Գինը 2 ռ.

## ԳՐԱԿԱՆ-ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ԿՐՈՍՎՈՐԴ

*ՈՒՂՂԱՀԱՅԱՑ — 1. Ռիմսկի-Կորսակովի օպերաներից, 2. սովետական էստրադային երգչուհի, 3. ֆրանսիացի աշխարհահռչակ գրող, 5. գրական-երաժշտական ժանր, 6. արևելյան երաժշտական գործիք, 8. ֆրանսիական էպոս, 9. յոթ ձայնանիշերից մեկը, 11. գործիքային անսամբլ, 12. ձայնանիշի միջազգային անվանումը, 13. Գլազունովի «Տարվա եղանակները» շարքի մասերից մեկը, 14. Հոմերոսի ստեղծագործություններից, 20. իտալական պար, 22. երաժշտական ազդանշան, 23. գերմանացի նշանավոր կոմպոզիտոր:*



*ՀՈՐԻԶՈՆԱԿԱՆ — 4. Ի՞նչ տիպի օպերա է «Եվգենի Օնեգինը», 7. անգլիացի արկածային գրող, 10. ֆրանսիացի հռչակավոր գրող, 11. վրացի հայտնի երգիչ, 17. ավստրիացի մեծ կոմպոզիտոր, 18. հայ գրող: 19. Ա. Ն. Օստրովսկու պիեսը, որի թեմայով օպերա է գրել Ռ. Կորսակովը, 21. հայ կոմպոզիտոր, 24. երաժշտական բեմական ստեղծագործություն, 25. սովետական մեծ գրող, 26. սովետական գրող:*

*ԿԻՍԱՇՐՋԱՆ.— 15. հայ կոմպոզիտոր, որը գրել է «Նամուս» օպերան, 16. հայ խոշոր գրականագետ:*

Կազմեց՝ Կ. ԳԵՎՈՐԳՅԱՆ

## ԱՅՆ Ո՞Ր ԹԻՎՆ Է…

*Որ եթե բազմապատկեք ցանկացած միանիշ թվով, ապա արտադրյալի երկու թվերը գումարելիս՝ դարձյալ կստանաք այդ նույն թիվը:*

Առաջարկ՝ Հ. ԲԱԴԱԼՅԱՆԻ

## ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ

Փոքրիկ տուն է՝
Վաթսուն մարդ,
Բոլորն ունեն
Գլխին զարդ:
Եթե մոտդ
Դու պահես,
Միշտ էլ կրակ
Կվառես:

Երկար վիզը
Մի ծառ է,
Իսկ մարմինը
Մի գառ է:
Ունի ոտներ
Շատ տձև,
Մի զույգ երկար,
Մի զույգ կարճ:

Վ. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ

Իրար կպած մեկ-մեկու
Եղբայրներ են տասներկու,
Ամբողջ տարին միշտ վազում,
Բայց իրարից չեն անցնում:

Հ. ԳԵՎՈՐԳՅԱՆ

## ԿՐՈՍՎՈՐԴ-ԿՐԻՊՏՈԳՐԱՄԱ

*Եթե գունավոր սյունակները (կենտրոնից դեպի դուրս) ճիշտ լրացնեք և մնացած թվերն էլ փոխարինեք համապատասխան տառերով, սպիտակ սյունակներում՝ դրսից դեպի կենտրոն, դուք կկարդաք ձեզ ծանոթ վեց գրողի անուն:*

*1. «Գուլիվերի ճանապարհորդությունները» գրքի հեղինակը, 2. ՍՍՌՄ շախմատի գրոսմայստեր, 3. ռուս հայտնի նկարիչ, 4. ֆրանսիական մեծ գրող, 5. ռուս գրող, 6.—«Ծերունի խոստաբերը» գրքի հեղինակը:*



Կազմեց՝ Վ. ԳԱՍՊԱՐՅԱՆ

## Պատասխանում ենք

«ՊԻՈՆԵՐ» № 5

**ԿՐՈՍՎՈՐԴ** — Ուղղահայաց.— 1. Մատրոսով. 2. Չապաև. 4. Գաստելլո. 6. Զասլոնով. 8. Ղուկասյան. 11. Նելսոն: ՀՈՐԻԶՈՆԱԿԱՆ — 3. Գակաֆանկյ. 5. Կամո. 7. Զոյա. 9. Կոժեդուբ:

Մեր ամսագրի նախորդ համարում սխալմամբ բաց են թողնված կրոսվորդի հորիզոնական 10. 12. 13. 14 հարցերի ձևակերպումները, որոնց պատասխաններն են՝ 10. Լազո. 12. Սուվորով. 13. Հունան. 14. Գուբկինին:

**ՌԵԲՈՒՍ** — ամենավատ թանաքը ամենալավ հիշողությունից լավ է:

# Գարնան համբույր

2 ռ.

Երաժշտությունը՝ Ն. ԵՂԻԱԶԱՐՅԱՆԻ

Խոսք՝ Ս. ՍԱՐԳՍՅԱՆԻ

Allegro

Գարուն է, գարուն մեր երկրում նորից,
Արևն է ժպտում մանկան պես զանգուր,
Երգն է մեր ուժգին հնչում բերկրալից,
Ողջո՜ւյն քեզ, գարնան առաջին համբույր:

Գարուն, դու որքա՜ն ծաղիկ ես բերել,
Որքա՜ն մարդիկ են քեզ նրգում սիրով,
Որքա՜ն սրտեր են վարդի պես բացվել
Ու ճամփադ լցրել խնդության ցողով:

Ողջու՜յն քեզ, ողջու՜յն, ծաղկազարդ գարուն,
Ոսկեղեն դու հյուր իմ պայծառ երկրի,
Կյանքն է մեր խնդուն քեզ նման փթթում
Մարդկության արդար վաստակով բերրի: